Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ՄԱՐՏ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆԿՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Օրերս Մոսկվայում տեղի ունեցավ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի հերթական պլենումը։

Պլենումը քննարկեց հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների հարցը և ընդունեց համապատասխան որոշում։

Պլենումը ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամների կազմի մեջ մտցրեց ընկ. Ն. Ա. Վոզնեսենսկուն։

Ստորև տպագրվում է գյուղատնտեսության վերելքի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի նշված որոշումը։

# ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՀՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ, ԸՆԴՈՒՆՎԱԾ ԸՆԿ. ԱՆԴՐԵԵՎԻ ԶԵԿՈՒՅՄԱՆ ԱՌԹԻՎ

Կոլխոզային կարգի հաղթանակի և մեր պարտիայի ու պետության կողմից խաղաղ շինարարության տարիներին կատարված հսկայական աշխատանքի շնորհիվ, երկրի ինդուստրացման հիման վրա մեր գյուղատընտեսությունը հետամնաց գյուղատընտեսությունից վերածվեց առաջավոր, ժամանակակից տեխնիկայով հագեցված գյուղատնտեսության։

Ստալինյան հնգամյակների տարիներին լուծվեցին այնպիսի արմատական հարցեր, ինչպես հացահատիկի պրոբլեմը— հացահատիկի համա-



խառն բերքը 1940 թվին գերազանցեց 7 միլիարդ փթից, իսկ ապրանքային հացահատիկ արտադրվեց համարյա երկու անգամ ավելի, քան 1913 թվին։ Մեծ չափով զարգացան տեխնիկական կուլտուրաները՝ բամբակը, վուշը, շաքարի ճակնդեղը, յուղատու բույսերը, թեյը, ցիտրուսները, ծխախոտը, ինչպես նաև կարտոֆիլն ու բանջարեղենը, որի հետևանքով մեր թեթև արդյունաբերությունն ստացավ սեփական հումքի բազա։ Միաժամանակ տեղի էր ունենում անասնաբուծության զգալի վերելք կոլխոզներում ու սովխոզներում։ Աճած խոտացանության և հացահատիկի արտադրության ավելացման շնորհիվ ստեղծվեց կայուն կերի բազա՝ անասնաբուծության զարգացման համար։

Գյուղատնտեսության վերելքը ապահովեց կոլխոզների հանրային հարստության և կոլխոզնիկների բարեկեցության աճը։ Պետությունը մթերում էր հացահատիկ, միս, յուղ և գյուղատնտեսական այլ մթերքներ այնպիսի չափերով, որոնք ապահո-

վում էին երկրի պարենային և հումքային կարիքները և լուրջ ռեզերվների ստեղծումը։

Գյուղում հաղթանակած և ամրապնդված կոլխոզային կարգի շնորհիվ, մեր գյուղատնտեսությունը պատերազմի ժամանակաշրջանում հաջողությամբ կատարեց իր խնդիրները։ Եթե պատերազմի ծանր տարիներին մեր բանակը պարենամթերքի պակասություն չէր զգում, եթե բնակչությանը մատակարարվում էր պարենամթերք, իսկ արդյունաբերությանը՝ հումք, ապա դրանում արտահայտվեց կոլխոզային կարգի ուժն ու կենսունակությունը, կոլխոզային գյուղացիության հայրենասիրությունը։

Իհարկե գերմանական զավթիչների կողմից մեր վզին փաթաթված պատերազմը ժամանակավորապես կասեցրեց մեր սոցիալիստական գյուղատնտեսության զարգացումը։ Հայրենական պատերազմի ընթացքում գյուղատնտեսության համար ստեղծվեցին լուրջ դժվարություններ։Կոլխոզներից, ՄՏ կայաններից և սովխոզնե-



րից բանակ վերցվեցին կադրերի, տրակտորների, ձիերի և ավտոմեքենաների մի զգալի մասը։ Արդյունաբերությունը, պատերազմական կարիքներին փոխադրվելու պատճառով, պետք է դադարեցներ գյուղատնտեսության համար տրակտորների արտադրությունը և զգալի չափով կրճատեր գյուղատնտեսական մեքենաների, նրանց պահեստի մասերի, պարարտանյութերի և վառելանյութի արտադրությունը։ Պատերազմի ընթացքում տերիտորիայի մի մասը ենթարկվեց գերմանական զավթիչների օկուպացմանն ու ավերմանը։

Պատերազմի տարիներին կրճատվեցին ցանքատարածությունները, նվազեց ժամանակին հերկվող և մշակվող ցելի տարածությունը, ցրտահերկի տարածությունը, լուրջ կերպով կրճատվեց խոտացանությունը։ Այդ բոլորը չէր կարող չանդրադառնալ կոլխոզներում ու սովխոզներում բերքատվությունը պակասելու, անասունների գլխաքանակը նվազելու

և նրանց մթերատվությունը իջնելու վրա։

Կոլխոզային գյուղացիությունը պատերազմից հետո հաջողությամբ վերականգնում է գյուղատնտեսությունը։ 1946 թվին, չնայած ՍՍՌՄ եվրոպական մասի տերիտորիայի մի զգալի մասը ընդգրկած և իր չափերով 1921 թվի երաշտին գերազանցող ուժեղ երաշտին, հացահատիկի համախառն բերքը և ապրանքային արտադրանքը, ճիշտ է, մի փոքր ավելի ցածր էր քան 1945 թվին, բայց անհամեմատ ավելի բարձր էր 1921 թվի բերքից, որը կարող էր տեղի ունենալ միայն շնորհիվ արտադրության սոցիալիստական կազմակերպման՝ նրա մեքենա-տրակտորային կայաններով ու կոլխոզային կարգերով։

Պատերազմը ավարտվելուց հետո, անցած ժամանակաշրջանում Կառավարությունը և Պարտիան մի շարք միջոցներ կիրառեցին գյուղատնտեսությունը վերականգնելու գործում։

Կազմակերպվել է պետական օգնու-



թյուն ազատագրված շրջանների կոլխոզներին՝ տրակտորներով, գյուղատնտեսական մեքենաներով, ավտոմեքենաներով, ՄՏ կայանների համար սարքավորումով, կոլխոզների համար ձիերով և մթերատու անասուններով։ Մեծ օգնություն է ցույց տրվել սերմացուով և կերով։ Սահմանվել են գյուղատնտեսական մթերքների հանձնման արտոնյալ պայմաններ։ Զգալի աշխատանք է կատարված հանրային շենքերը և կոլխոզնիկների տները վերականգնելու ասպարեզում։ Հիմնականում վերականգնվել են բոլոր ՄՏ կայանները։ Այդ միջոցները հնարավորություն տվեցին 1946 թվին ապահովել այն, որ ազատագրված շրջանների կոլխոզներում և գյուղացիական տնտեսություններում վերականգնվեց ցանքատարածությունների նախապատերազմյան մակարդակի մոտ երեք քառորդը և կոլխոզների ու կոլխոզնիկների անասնաբուծության մակարդակի ավելի քան կեսը։

Վերականգնվել և աշխատում են տրակտորային գործարանները՝ Ստա-

լինգրադում և Խարկովում, կառուցվել են Ալթայում և Վլադիմիրում տրակտորային նոր գործարաններ, ավարտվում է Լիպեցկի տրակտորային գործարանի կառուցումը, վերականգնվել է տրակտորների արտադրությունը Չելյաբինսկի գործարանում։ Վերականգնվում են օկուպացիայի ժամանակ ավերված գյուղատնտեսական մեքենաշինության գործարանները։ Փոխադրվել են գյուղատնտեսական մեքենաների արտադրության՝ նախկինում ռազմական պատվերների կատարմամբ զբաղված շատ գործարաններ։ Մեր արդյունաբերությունն արդեն այս տարի պետք է զգալի չափով ավելացնի գյուղատնտեսության համար տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների արտադրությունը։

Կոլխոզներում ու սովխոզներում վերականգնվում են տեսակավոր ցանքերը և խոտացանությունը, վերականգնվում են խախտված ցանքաշրջանառությունները և մտցվում են նորերը։ Ձեռք առնված միջոցների շնորհիվ արդեն հաջողություններ են



ձեռք բերվել բամբակի ցանքատարածությունները վերականգնելու և բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում։

Համաձայն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ընդունած որոշման՝ մեծ աշխատանք է կատարվում կոլխոզներում հայտաբերված թերությունները և Գյուղատընտեսական արտելի կանոնադրության խեղաթյուրումները վերացնելու ուղղությամբ։

Այժմ, խաղաղ շինարարության անցնելուց հետո, մեր պարտիայի և պետության առաջ նորից, որպես ամենաանհետաձգելի խնդիր, ամբողջ հասակով ծառացել է գյուղատնտեսության այնպիսի վերելքի ապահովումը, որը թույլ տար ամենակարճ ժամկետում ստեղծել պարենի առատություն՝ մեր բնակչության համար, հումքի՝ թեթև արդյունաբերության համար և պետական անհրաժեշտ պարենային ու հումքային ռեզերվների կուտակում։

Այս խնդիրը հաջողությամբ և ամենակարճ ժամկետում լուծելու համար անհրաժեշտ է.

7. Բարելավել գյուղատնտեսության ղեկավարությունը պարտիական և սովետական օրգանների, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության և նրանց տեղական օրգանների կողմից։ Գյուղատնտեսության ամբողջ ղեկավարությունը, վարից մինչև վեր, պետք է հասցվի ավելի բարձր մակարդակի, որը համապատասխանի գյուղատնտեսության առաջ դրված հսկայական խնդիրներին։

Անհրաժեշտ է վերջ տալ գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում այնպիսի լուրջ թերությունների, ինչպես գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման և անցկացման գործում հարկ եղած օպերատիվության բացակայությունը և ուշացումը, կոլխոզների, սովխոզների, ՄՏ կայանների և շրջանների աշխատանքի գնահատմանը միջին տվյալների հիման վրա ցույց տրվող ոչ ճիշտ մոտեցմանը փոխանակ դիֆերենցված մոտեցման, որը հնարավորություն



է տալիս տեսնել առաջավորներին ու ետ մնացողներին, և ետ մնացողներին հասցնել առաջավորների մակարդակին։ Չի կարելի հանդուրժել այնպիսի թերություններ, ինչպես կոլխոզներում համառ, սիստեմատիկ կազմակերպչական աշխատանքի և կադրերի դաստիարակության նենգափոխումը վարչարարությամբ, կոլխոզների նախագահների հաճախակի փոփոխությամբ և ներկոլխոզային դեմոկրատիայի խախտմամբ։

Պարտիական, սովետական ու գյուղատնտեսական օրգանների ղեկավարներից պահանջվում է սիստեմատիկ և հմուտ կերպով ղեկավարել գյուղատնտեսությունը, վտարել պրակտիկայից ղեկավարության բյուրոկրատական գրասենյակային մեթոդները, որոնք արտահայտվում են առաջադրանքներ տալով՝ առանց այդ առաջադրանքները կազմակերպորեն ապահովելու և տեղերում պլանի կատարման ամենօրյա ստուգման։

Սահմանել, որ գյուղատնտեսության ասպարեզում Կառավարության կող-

մից հաստատված տարեկան պլանները՝ ժողովրդատնտեսական պլանի հետ միասին պետք է հասցվեն մարզերին, երկրամասերին և ռեսպուբլիկաներին, ոչ ուշ քան համապատասխան տարվա հունվարի մեկը։

2. Մինչև վերջը վերացնել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հայտաբերված Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումները, որոնք արտահայտվում են աշխօրերի սխալ ծախսումով, կոլխոզների հանրային հողերի հափշտակումով, կոլխոզային սեփականության կողոպտմամբ, գյուղատնտեսական արտելի գործերի կառավարման դեմոկրատական հիմունքների խախտմամբ։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը գտնում է, որ Գյուղատնտեսական արտելի կանոնադրության այս խախտումները և խեղաթյուրումները, որոնք խանգարում են գյուղատնտեսության վերելքի և կոլխոզների հետագա ամրապնդման գործին, հետևանք են տեղական պարտիական և սո-



վետական կազմակերպությունների կողմից կոլխոզների անբավարար, իսկ երբեմն էլ ուղղակի ոչ ճիշտ ղեկավարության։

3. Վերացնել կոլխոզնիկների աշխատանքի կազմակերպման և վարձատրման ասպարեզում եղած թերությունները, որոնք արգելակում են կոլխոզներում աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և հանրային տնտեսության ամրապնդման գործին։

Այս թերությունները արտահայտվում են հետևյալում.

աշխօրերի գրանցման և եկամուտների բաշխման ասպարեզում հավասարեցման առկայությամբ՝ անկախ բրիգադաների և օղակների աշխատանքի արդյունքներից, որի հետևանքով ազնիվ և լավ աշխատող կոլխոզնիկները ոչ նպաստավոր դրության մեջ են դրվում կոլխոզնիկների մեջ եղած գռփող և անբարեխիղճ տարրերի համեմատությամբ.

կոլխոզներում արտադրանքի հնացած, իջեցրած նորմաների առկայու-

թյամբ, որը առաջ է բերում աշխօրե-
րի շռայլում, աշխօրերի ծախսման
գործում հարկ եղած կարգ ու կանոնի
բացակայություն։

Անհրաժեշտ է կոլխոզների դրական
փորձի հիման վրա մշակել և ապահո-
վել աշխատանքի վարձատրման, լավ
աշխատող կոլխոզնիկներին խրախու-
սելու ավելի ճիշտ ձևերի կիրառումը։

4. Վճռականորեն բարելավել մեքե-
նատրակտորային կայանների աշխա-
տանքը, որոնցից զգալի չափով կախ-
ված է բերքի բախտը կոլխոզային
դաշտերում։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի
պլենումը ՍՍՌՄ Գյուղատնտեսության
մինիստրությունից և նրա տեղական
օրգաններից, պարտիական, սովետա-
կան օրգաններից և ՄՏ կայանների
դիրեկտորներից պահանջում է վերաց-
նել ՄՏ կայանների աշխատանքում ե-
ղած այնպիսի լուրջ թերությունները,
ինչպես տրակտորների և կոմբայնների
դեռևս ցածր արտադրանքը, տրակ-
տորների և գյուղատնտեսական մեքե-
նաների վատ վերանորոգումը, նրանց
վերանորոգման ուշացումը, ՄՏ կա-



յանների շատ դիրեկտորների, ագրո-
նոմների և տրակտորիստների անպա-
տասխանատու վերաբերմունքը տրակ-
տորային աշխատանքները ժամանա-
կին կատարելու և այդ աշխատանք-
ների բարձր որակը ապահովելու և
հետևաբար կոլխոզային դաշտերում
բերքատվությունը բարձրացնելու գոր-
ծին։

Գտնել ոչ ճիշտ, որ ՄՏ կայանների
աշխատանքի գնահատումը կատար-
վում է նկատի ունենալով միայն
տրակտորային աշխատանքների պլա-
նի կատարումը փափուկ վարով՝ փո-
խանակ ՄՏ կայանների աշխատանքը
գնահատելու ըստ նրանց կողմից
գյուղատնտեսական աշխատանքների
կարևորագույն տեսակների պլանները
կատարելու։ Այդ հասցնում է այն
բանին, որ ՄՏ կայանների մի
մասը ձգտում է տրակտորային աշխա-
տանքների պլանը կատարել ամեն
տեսակի թեթև աշխատանքների՝ փոց-
խելու և այլ աշխատանքների հաշ-
վին։ Ցուցամոլաբար յուրաքանչյուր
տրակտորի արտադրանքը փափուկ

վարի հեկտարներով բարձր հաշվելու հետևից ընկնելով, ՄՏ կայանների և տրակտորային բրիգադների շատ աշխատողներ թույլ են տալիս տրակտորային աշխատանքների ցածր որակ, խախտելով ագրոտեխնիկայի տարրական պահանջները։

Վերացնել ՄՏ կայանների աշխատանքների պլանի կատարումը միայն փափուկ վարի հեկտարներով գնահատելու գործող սիստեմը և պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ կիրառել ՄՏ կայանների աշխատանքների գնահատման նոր կարգ, նկատի առնելով տրակտորային աշխատանքների հիմնական տեսակների կատարումը նրանց կողմից։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատընտեսության մինիստրությանը և նրա տեղական օրգաններին, պարտիական և սովետական կազմակերպություններին՝ կարգի բերել ՄՏ կայաններում եղած տրակտորներն ու գյուղատնտեսական մեքենաները և հասնել նրանց



ավելի բարձր արտադրանքի, բարձրացնել տրակտորային աշխատանքների որակը, բարելավել ՄՏ կայանների համար տրակտորիստների, կոմբայնավարների, բրիգադիրների կադրեր պատրաստելու գործը։

5. Կազմակերպել գյուղատնտեսության համար կադրերի լայն պատրաստում և վերապատրաստում, այն հաշվով, որպեսզի ամենակարճ ժամկետում վերացվի ՄՏ կայաններում, կոլխոզներում և սովխոզներում փորձված և պատրաստված կադրերի պակասությունը։ Վերջ տալ գյուղատնտեսության մասնագետ կադրերի ոչ ճիշտ օգտագործմանը, երբ նրանց մի խոշոր մասը զբաղված է գրասենյակային աշխատանքում և ոչ թե արտադրության մեջ, որի հետևանքով կոլխոզները ժամանակին անհրաժեշտ օգնություն չեն ստանում իրենց տնտեսությունը կազմակերպելու և դաշտավարության ու անասնաբուծության ասպարեզում առաջավոր եղանակներ արմատավորելու գործում։

6. Գյուղատնտեսությունը հագեցնել նոր տրակտորներով, գյուղատնտեսական մեքենաներով, ավտոմեքենաներով, ապահովել պարարտանյութերով և վառելանյութով։ Համ. Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը տեղական պարտիական ու սովետական օրգաններից և արդյունաբերության ղեկավարներից պահանջում է եռանդուն աշխատանք տրակտորների, գյուղատնտեսական մեքենաների ու նրանց համար պահեստի մասերի, պարարտանյութերի և վառելանյութի արտադրության պլանները կատարելու և գերակատարելու համար։ Անհրաժեշտ է վերացնել այնպիսի լուրջ թերություններ, ինչպես գյուղատնտեսության համար պատվերները ժամանակին կատարելու թերագնահատումը, վատորակ արտադրանքի թողարկումը, արդյունաբերության և գործարանների որոշ աշխատողների փորձերը՝ առաջ չգնալ մեքենաների հնացած տիպեր պատրաստելուց և նրանց պահպանո-



ղական վերաբերմունքը տրակտորների ու գյուղատնտեսական մեքենաների նոր ավելի բարձր արտադրողականություն ունեցող կոնստրուկցիաները ամենաարագ կերպով արմատացնելու գործին։

Ելնելով հիշյալ խնդիրներից, Համ. Կ(բ)Պ Կենտկոմի Պլենումը որոշում է.

## I

## ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Պարտավորեցնել պարտիական, սովետական կազմակերպություններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին.

1. Երեք տարվա ընթացքում՝ 1947, 1948 և 1949 թվերին վերականգնել հացահատիկի արտադրության նախապատերազմյան մակարդակը համախառն բերքի գծով և զգալի չափով գերազանցել այն հնգամյակի վերջում։

Ցանքատարածությունների ընդլայ-
նելու հետ միասին, հիմնական խնդիր
համարել հացահատիկային կուլտու-
րաների բերքատվության բարձրացու-
մը, որի համար անհրաժեշտ է լրիվին
ապահովել աշնանացան ցորենի հա-
մար, իսկ արևելյան շրջաններում
գարնանացան ցորենի համար ցելերի
ժամանակին հերկումը և մշակումը,
գարնանացան կուլտուրաների ցանքը
կատարել ցրտահերկի վրա, վերացնել
կոլխոզների և սովխոզների դաշտե-
րում ծանծաղ վարը և հնգամյակի
վերջում լրիվին վերականգնել ու կի-
րառել կանոնավոր ցանքաշրջանառու-
թյուններ՝ բոլոր կոլխոզներում ու
սովխոզներում։

2. Կառավարության կողմից ըն-
դունված պլանի համապատասխան՝
1946 թվի համեմատությամբ ընդլայ-
նել հացահատիկային կուլտուրաների
ցանքատարածությունը՝ 1947 թվին
6,3 միլիոն հեկտարով, որից կոլխոզ-
ներում՝ 5,7 միլիոն հեկտարով և 1948
թվին՝ 6,1 միլիոն հեկտարով 1947



թվի դիմաց, որից կոլխոզներում 5
միլիոն հեկտարով։

Ապահովել 1950 թվին 127 միլիոն
տոննա հացահատիկի համախառն
բերք ստանալու ասպարեզում հըն-
գամյա պլանով նախատեսված խնդրի
անպայման կատարումը և գերակա-
տարումը։

3. Նշել, որ հացահատիկային հիմ-
նական այնպիսի շրջանների պար-
տիական, սովետական և գյուղատըն-
տեսական օրգանները, ինչպիսիք են՝
Նովոսիբիրսկի, Ռոստովի, Կույբիշե-
վի, Չելյաբինսկի, Տամբովի, Ուլյա-
նովսկի. Կուրսկի, Վորոնեժի մարզե-
րը, անբավարար են զբաղվում հա-
ցահատիկի արտադրությունը վերա-
կանգնելու և զարգացնելու գործով. և
առանձնապես դանդաղ են վերա-
կանգնվում ցանքատարածություննե-
րը ու հացահատիկային կուլտուրա-
ների բերքատվությունը՝ Սարատովի,
Ստալինգրադի, Պենզայի, Կուրգանի
մարզերում և Կրասնոյարսկի երկրա-
մասում։

4. Ավելացնել ցորենի՝ որպես հիմ-

նական պարենային կուլտուրայի արտադրությունը.

**ա) աշնանացան ցորենի բնագավառում**—Ուկրաինական ՍՍՌ-ում, Կրասնոդարի, Ստավրոպոլի երկրամասերում, Ռոստովի, Ղրիմի, Վորոնեժի, Կուրսկի մարզերում և Մոլդավական ՍՍՌ-ում 1949 թվին վերականգնել և հասցնել նախապատերազմյան մակարդակին աշնանացան ցորենի արտադրությունը, զգալիորեն բարձրացնել բերքատվությունը, այդ շրջանների կոլխոզներում աշնանացան ցորենի ցանքը ավելացնելով 1947 թվի աշնանը 1 միլիոն 500 հազար հեկտարով՝ համեմատած 1946 թվի բերքահավաքի տարածության հետ և հասցնել այն 7,2 միլիոն հեկտարի, որից Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 4,4 միլիոն հեկտարի և 1948 թվին՝ 8,3 միլիոն հեկտարի, որից Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 4,8 միլիոն հեկտարի։

Ապահովել բերքատվության զգալի բարձրացումը և համախառն բերքի ավելացումը աշնանացան ցորեն մշակող մնացած շրջաններում, մանավանդ Պովոլժյեի, Ուզբեկական, Տաջիկական ՍՍՌ-ների շրջաններում, Ղազախական ՍՍՌ-ի հարավային մարզերում, Կիրգիզական և Ադրբեջանական ՍՍՌ-ներում։



**բ) գարնանացան ցորենի բնագավառում**— Արևելյան շրջանների կոլխոզներում (Սիբիրում, Ուրալում և Ղազախական ՍՍՌ-ի հյուսիս-արևելյան մարզերում) ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման համապատասխան ցանքատարածությունն ավելացնել 1 միլիոն 324 հազար հեկտարով և այն հասցնել 1947 թվին 7,9 միլիոն հեկտարի, 1948 թվին՝ 9,4 միլիոն հեկտարի և 1949 թվին՝ 11,4 միլիոն հեկտարի, ապահովելով բերքատվության բարձրացումը։ Գարնանացան ցորենը տեղադրել առաջին հերթին խամ և խոպան հողաշերտի և շրջված հողաշերտի վրա, աշնանը կրկնահերկ արված մաքուր ցելերում և ցրտահերկ հողերում։

Պովոլժյեում (Կույբիշևի, Սարատովի, Ստալինգրադի և Ուլյանովսկի մարզերում) միջոցներ ձեռք առնե-

գարնանացան ցորենի ցանքատարածությունը, մանավանդ կարծր ցորենի տեսակները զգալիորեն ընդլայնելու համար, ավելացնել այդ մարզերի կոլխոզներում գարնանացան ցորենի ցանքը՝ 300 հազար հեկտարով և այն հասցնել 1947 թվին 2,4 միլիոն հեկտարի և 1948 թվին՝ 3 միլիոն հեկտարի, օգտագործել ցորենի ցանքի համար խամ և հին խոպանացած հողերը Ղազախստանի չորային շրջաններում կիրառել գարնանացան ցորենի ցանքը մաքուր, լավ հերկված ցելերում։

Ավելացնել գարնանացան ցորենի տարածությունները ոչ սևահողային գոտու մարզերի կոլխոզներում 200.000 հեկտարով և դրանք հասցնել 1947 թվին 1,6 միլիոն հեկտարի և 1948 թվին՝ 1.8 միլիոն հեկտարի։ Ապահովել գարնանացան ցորենի բերքատվությունը և համախառն բերքը այդ ցորենը մշակող մյուս շրջաններում։

Նշել գարնանացան ցորենի արտադրության լուրջ կերպով ետ մնալը Ուկրաինական ՍՍՌ-ում։ Անթույլատրելի համարել, որ այդպիսի արժե-



քավոր պարենային կուլտուրան, ինչպիսին է գարնանացան ցորենը, Ուկրաինական ՍՍՌ կոլխոզներում և սովխոզներում տարեց-տարի դուրս է մղվում, իսկ բերքի սևահողերը օգտագործվում են ավելի պակաս արժեք ունեցող կերային կուլտուրաների, մանավանդ գարու ցանքի համար։ 1947 թվին 1946 թվի համեմատությամբ ավելացնել գարնանացան ցորենի ցանքը Ուկրաինայի կոլխոզներում 182 հազար հեկտարով և այն հասցնել 750 հազար հեկտարի, ապահովել հետագա տարիներում գարնանացան ցորենի ցանքերի հետագա ընդլայնումը։

5. Միջոցներ ձեռնարկել ավելացնելու աշնանացան տարեկանի արտադրությունը ոչ սևահողային գոտու շրջաններում, Կենտրոնական սևահողային մարզերում, Ուկրաինայի հյուսիսային մարզերում, Պովոլժյեի աջափնյա շրջաններում և այլ շրջաններում։

Առաջարկել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին՝ ռեսպուբլիկաների, երկրա-

մաների ու մարզերի համար սահմանել առաջադրանքներ աշնանացան տարեկանի ցանքերը ընդլայնելու և նրա բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում։

6. Նշելով լոբազգի կուլտուրաների արտադրության անբավարար վիճակը, մանավանդ Պենզայի, Ստալինգրադի, Ուլյանովսկի և Ռյազանի մարզերում, Թաթարական, Բաշկիրական և Մորդվական ԱՍՍՌ-ներում և Ուկրաինական ՍՍՌ-ում, ավելացնել ՍՍՌՄ-ում լոբազգիների ցանքատարածությունը կոլխոզներում 300 հազար հեկտարով և հասցնել այն 1947 թվին 1,3 միլիոն հեկտարի ու 1948 թվին՝ 1,6 միլիոն հեկտարի և զգալիորեն բարձրացնել այդ կուլտուրաների բերքատվությունը, հատուկ ուշադրություն դարձնելով սիսեռի ցանքերի ամենաարագ վերականգնմանը Ուկրաինական ՍՍՌ-ում, Միության կենտրոնական և արևելյան շրջաններում։ Ընդլայնել լոբու ցանքերը և բարձրացնել բերքատվությունը։ Ապահովել ոսպի՝ մանավանդ ափսեա-



նման ոսպի տեսակների ցանքերի ավելացումը կենտրոնական-սևահողային մարզերում, Պովոլժյեի շրջաններում և Ուկրաինական ՍՍՌ անտառատափաստանային շրջաններում։

7. Ընդլայնել ՍՍՌՄ-ում եգիպտացորենի ցանքատարածությունը՝ կոլխոզներում 1947 թվին 280 հազար հեկտարով և այն հասցնել 2 միլիոն 260 հազար հեկտարի և 1948 թվին՝ 2 միլիոն 700 հազար հեկտարի, զգալի չափով բարձրացնել եգիպտացորենի բերքատվությունը։ Մոտակա տարիներում ավելացնել եգիպտացորենի ցանքի, շարամեջ մշակման և բերքահավաքի մեքենայացումը։ Նպատակ ունենալով բարձրացնել եգիպտացորենի բերքատվությունը, 2—3 տարվա ընթացքում ապահովել եգիպտացորենի զգալի ցանք հիբրիդային սերմերով, այն պայմանով, որպեսզի հետագայում կատարվի հիբրիդային սերմերով մասսայական ցանք։ Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը կազմակերպել սերմնաբուծական կոլխոզներում

և սովխոզներում եգիպտացորենի
հիբրիդային սերմերի արտադրու-
թյունը։ Ընդունել կոլխոզներից և
մյուս տնտեսություններից եգիպտա-
ցորենի աճեցված հիբրիդային առա-
ջին գեներացիայի սերմերը էլիտային
սերմերի հետ հավասար պայմաննե-
րով։

8. ՍՍՌՄ-ում ընդլայնել հնդկացո-
րենի ցանքային տարածությունը՝ կոլ-
խոզներում 1947 թվին 420 հազար
հեկտարով ու այն հասցնել 1,5 մի-
լիոն հեկտարի և 1948 թվին՝ 1,7 մի-
լիոն հեկտարի, ապահովելով բերքա-
տվության զգալի բարձրացումը։

9. Զգալիորեն բարձրացնել կորեկի
բերքատվությունը, օգտագործելով
այդ կուլտուրայի բարձր բերքի հա-
մար պայքարելու ասպարեզում 1939
և 1940 թվերին կոլխոզների, սովխոզ-
ների և գյուղատնտեսական գիտու-
թյան ձեռք բերած փորձը։ Պարտա-
վորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսու-
թյան մինիստրությանը և ՍՍՌՄ Սով-
խոզների մինիստրությանը, մասնա-
կից դարձնելով Վ. Ի. Լենինի անվան



Գյուղատնտեսական գիտությունների
Համամիութենական ակադեմիային,
1947 թվին՝ 1939 և 1940 թվերի օրի-
նակով կազմակերպել կորեկի բերքի
ստացում կոլխոզներում և սովխոզ-
ներում 1 միլիոն հեկտար տարածու-
թյան վրա՝ միջին հաշվով հեկտարից
15 ցենտներ։

10. ՍՍՌՄ-ում ավելացնել բրնձի
ցանքատարածությունը՝ կոլխոզներում
15 հազար հեկտարով ու 1947 թվին
այն հասցնել 150 հազար հեկտարի և
1948 թվին մինչև 160 հազար հեկ-
տարի, բարձրացնելով բրնձի բերքա-
տվությունը։ Ապահովել ցանքաշրջա-
նառությունների ամենաարագ յուրա-
ցումը բրնձացանության շրջաններում
և բրնձի դաշտերի ճիշտ ոռոգումը։

11. Ապահովել վաղ ժամկետներում
մաքուր ցելերի հերկը և ամառվա ըն-
թացքում այդ ցելերում առնվազն երեք,
իսկ հարավում՝ չորս մշակում։ Սահ-
մանել, որ վաղ մաքուր ցելերը հարա-
վում և Հյուսիսային Կովկասում պետք
է հերկվեն ոչ ուշ քան մինչև մայիսի
20-ը, իսկ մնացած շրջաններում

ՄԻՆՉԵՎ ՀՈՒՆԻՍԻ 10-Ը, ԻՍԿ 1947 ԹՎԻՆ
որպես բացառություն, կոլխոզների ու
սովխոզների քաշող ռեսուրսների լար-
վածության հետևանքով Հարավում և
Հյուսիսային Կովկասում ցելի հերկը
ավարտել ոչ ուշ քան մինչև հունիսի
10-ը, իսկ մնացած շրջաններում ոչ
ուշ քան մինչև հունիսի 20-ը։

12. Ավարտել աշնանացան և գար-
նանացան հացահատիկային կուլտու-
րաների անցումը համատարած շրջ-
ջանացված, ավելի բերքատու տեսակ-
ների ցանքի բոլոր մարզերում, երկ-
րամասերում և ռեսպուբլիկաներում
ոչ ուշ 1949 թվից և միջոցներ ձեռ-
առնել ամենաարագ կերպով բազմաց-
նելու ավելի բերքատու շրջանաց-
ված նոր տեսակներ՝ հնացած և բիչ
բերքատու տեսակներին փոխարինելու
համար։

Նշել, որ ՍՍՌՄ Գյուղատնտեսու-
թյան մինիստրությունում, նրա Գըլ-
խավոր սորտային վարչությունում և
Մինիստրությանը կից Հացահատի-
կային կուլտուրաների տեսակները
փորձարկող պետական հանձնաժողո-



վում բարձր բերքատվություն ունե-
ցող և տեղական պայմաններին հար-
մարեցված՝ տեսակների աճեցման ա-
պարեզում սելեկցիոն աշխատանքը
դեռևս ետ է մնում գյուղատնտեսու-
թյան պահանջներից։ Բարձր բերքա-
տվություն ունեցող հին տեսակները,
մանավանդ գարնանացան ցորենի
գծով, շատ շրջաններում անհե-
տացել են։ Իսկ նոր, ավելի բարձր
բերքատվություն ունեցող տեսակնե-
րը խիստ դանդաղ են արմատավոր-
վում գյուղատնտեսական արտադրու-
թյան մեջ։ Մինչև այժմ Սիբիրի կոլ-
խոզները չունեն աշնանացան ցորենի
ցրտադիմացկուն տեսակները։
Բարելավել սելեկցիոն-սերմնաբու-
ծական աշխատանքի դրվածքը և
գյուղատնտեսական օրգանների, սե-
լեկցիոն- փորձնական հիմնարկու-
թյունների ու սելեկցիոներների առաջ
խնդիր դնել՝ մոտակա 2—3 տարինե-
րում աճեցնելու հացահատիկային,
լոբազգի, յուղատու կուլտուրաների
և խոտերի տեղական պայմաններին
հարմարված բարձր բերք տվող տե-
սակներ։

Անհրաժեշտ համարել Սիբիրի և Անդրուրալյան շրջաններում կատարել կոլխոզներում և սովխոզներում ինչպես վաղ հասունացող, այնպես էլ ուշ հասունացող տեսակների ցանք այն պայմանով, որպեսզի թուլացվի լարվածությունը աշխատանքի ամենապատասխանատու շրջաններում՝ ցանքի և բերքահավաքի ժամանակ և ապահովել հացահատիկի ավելի մեծ բերքի ստացումը: Այդ գոտու սելեկցիոն հիմնարկություններին՝ ուժեղացնել գարնանացան ցորենների վաղ հասունացող և բարձր բերք տվող տեսակներ մտցնելու աշխատանքը:

13. 1947 թվից կազմակերպության հացահատիկային կուլտուրաների համար վերականգնել ցանքատարածությունների պլանավորման այն կարգը, որով նախատեսվում է ցանքի պլանները հասցնել կոլխոզներին յուրաքանչյուր հացահատիկային կուլտուրայի գծով առանձին-առանձին:

14. Անհրաժեշտ համարել առաջին հերթին ապահովել հիմնական հացահատիկային շրջանները տրակտորնե-



րով, կոմբայններով, գյուղատնտեսական այլ մեքենաներով և ավտոմոբիլներով, մանավանդ այն շրջանները, որոնք ունեն կոլխոզային յուրաքանչյուր տնտեսության ընկնող մեծ տարածությամբ վարելահողեր (Սիբիր, Հյուսիսային Ղազախստան, Պովոլժյե): Հացահատիկային տնտեսության մեքենայացումը բարձրացնելու համար, մոտակա տարիներում լայն կերպով արմատավորել ինքնընթաց կոմբայններ, տրակտորային սկավառակավոր երեսվար գութաններ, ծանր սկավառակավոր տափաններ, քառակուսի բներ ունեցող շարքացաններ եգիպտացորենի համար, հացահատիկ չորացնող շարժական մեքենաներ, հացահատիկ մաքրող բարդ մեքենաներ:

## II
## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Պարտավորեցնել պարտիական և սովետական կազմակերպություններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մի-

նիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին՝ 1947 թվի պետական պլանի և հնգամյա պլանի առաջադրանքին համապատասխան երեք տարվա ընթացքում՝ 1947, 1948 և 1949 թվերին վերականգնել և գերազանցել տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, թելավուշի, շաքարի ճակնդեղի արտադրության նախապատերազմյան մակարդակը։

Բերքատվությունը բարձրացնելու համար տեխնիկական կուլտուրաները տեղադրել լավագույն հողերում ցանքերը կատարել ցրտահերկի վրա, ապահովելով հողի լավ նախացանքային մշակումը, ժամանակին կատարելով ցանքը և շարամեջ մշակումը, ավելացնել հանքային պարարտանյութերի կիրառումը և լրիվ օգտագործել ոռոգվող հողերը։

## ԲԱՄԲԱԿԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

1. Նշել, որ 1946 թվին բամբակագործության հիմնական շրջաններում՝ Ուզբեկական, Տաջիկական, Ադրբեջանական ՍՍՌ-ներում ձեռք է բերվել



բամբակի բերքատվության բարձրացում և համախառն բերքի ավելացում։

Սակայն բամբակի արտադրության ասպարեզում դեռևս տեղի ունեն լուրջ թերություններ, որոնք կասեցնում են բամբակագործության հետագա վերելքը։ Ոռոգվող հողերը սխալ օգտագործելու հետևանքով մի շարք շրջաններում, մանավանդ Ուզբեկական ՍՍՌ-ում, գյուղատնտեսության շրջանառությունից դուրս են մնացել ջրովի հողերի զգալի տարածություններ։ Տեղի ունի ոռոգման սիստեմի ոչ ճիշտ շահագործում, լրիվ չեն օգտագործվում մեխանիզմները, խախտվում են ագրոտեխնիկայի պահանջները ժամկետների և մշակման, ջրելու ու գյուղատնտեսական մյուս աշխատանքների որակի տեսակետից, դանդաղ է զարգանում խոտացանությունը և անբավարար են մտցվում ու յուրացվում ցանքաշրջանառությունները։

Մի շարք մարզերում և շրջաններում կոլխոզներն ու սովխոզները ստանում են բամբակի ցածր բերք և

չեն կատարում մթերումների պետական պլանները։

Բամբակի առանձնապես անբավարար բերք է ստացվել 1946 թվին Խորեզմի, Հարավային Ղազախստանի մարզերում և Ուզբեկական, Թուրքմենական ՍՍՌ-ների մի շարք այլ շրջաններում։

2. Բամբակագործությունը ամենաարագ կերպով վերականգնելու և նրա հետագա բարձրացման նպատակով բամբակի ցանքատարածությունը 1947 թվին ավելացնել 165,6 հազար հեկտարով և այն 1947 թվին հասցնել 1 միլիոն 467 հազար հեկտարի և 1948 թվին՝ 1 միլիոն 530 հազար հեկտարի։

Ապահովել 1950 թվին բամբակի համախառն բերքը 3,1 միլիոն տոննայի հասցնելու վերաբերյալ հնգամյա պլանի առաջադրանքի կատարումը և գերակատարումը։

3. Ապահովել բոլոր բամբակացան ռեսպուբլիկաներում եղած ոռոգվող հողերի ճիշտ և լիակատար օգտագործումը, թույլ չտալով նրանց ա-



ղիացումը և ճահճացումը։ 1947—1948 թվերին վերականգնել լքված ջրովի հողերը, մանավանդ Ուզբեկական, Տաջիկական, Թուրքմենական, Կիրգիզական և Ղազախական ՍՍՌ-ներում։

4. Բարելավել ոռոգիչ և ցամաքեցնող սիստեմների տեխնիկական վիճակը։ Ուժեղացնել վերահսկողությունը ոռոգիչ ջուրը ճիշտ օգտագործելու նկատմամբ, թույլ չտալով ջրելու և ոռոգման նորմաների խախտում։ Կանոնավորել ջրի օգտագործումը կոլխոզներում և սովխոզներում, բարելավել ջրելու տեխնիկան, ամենուրեք արմատավորել ակոսներով կատարվող ճիշտ ոռոգումը և վերացնել բամբակի ջրումը ողողելու միջոցով։

5. 1950 թվին բամբակի գծով հիմնական աշխատանքների մեքենայացումը հասցնել հետևյալ չափերի. վարի և ցանքի բնագավառում 95 տոկոսի, երկայնակի կուլտիվացիայի գծով՝ 90 տոկոսի. լայնակի կուլտիվացիայի գծով՝ 40 տոկոսի, բամբակի բերքահավաքի գծով՝ 30 տոկոսի,

կույտերը մաքրելու գծով՝ 60 տոկոսի։

6. 1947 թվին ապահովել 565 հազար տոննա հանքային պարարտանյութերի ներմուծումը բամբակացան ռեսպուբլիկաների կոլխոզների ու սովխոզների համար։

ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

7. Նշել, որ զգալի չափով նվազել է շաքարի ճակնդեղի բերքատվությունը և նրա հանձնումը պետությանը մանավանդ Ուկրաինական ՍՍՌ-ի, Կուրսկի, Վորոնեժի և Տամբովի մարզերի ճակնդեղացան հիմնական շրջաններում։

Շաքարի ճակնդեղի արտադրությունը ամենաարագ կերպով վերականգնելու և նրա հետագա զարգացման նպատակով ավելացնել շաքարի ճակնդեղի տարածությունը 1947 թվին 120 հազար հեկտարով, որից Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 93 հազար հեկտարով և 1947 թվին ՍՍՌՄ-ում այն հասցնել 1.058 հազար հեկտարի և



1948 թվին՝ 1.319 հազար հեկտարի։

8. 1949 թվին բոլոր ճակնդեղացան կոլխոզներում ավարտել ճիշտ ցանքաշրջանառությունների վերականգնումը և կիրառումը, գործադրելով այդ ցանքաշրջանառության մեջ լոբազգի և բազմամյա խոտերի խառնուրդ, սկսած 1947—48 թվերից շաքարի ճակնդեղի ցանքերը կատարել միայն խոզանը նախապես և ժամանակին երեսվար անելուց հետո կատարված խոր ցրտահերկի վրա։ Շաքարի ճակնդեղի ցանքը կատարել վաղ, սեղմ ժամկետներում ոչ ավելի քան 6—7 օրում և սկսել այն վաղ հացահատիկային կուլտուրաների մասսայական ցանքի հետ միասին։

9. Կազմակերպել պայքար շաքարի ճակնդեղի գյուղատնտեսական վնասատուների դեմ, լայն կերպով օգտագործելով հավերը ճիճուների դեմ պայքարելու համար, ժամանակին նախապատրաստել և փոխադրել կոլխոզները, սովխոզներն ու ՄՏ կայանները անհրաժեշտ միջոցներ գյուղատնտեսական վնասատուների դեմ

պայքարելու համար՝ թունավոր քիմիական նյութեր, սրսկիչներ և փոշեցան գործիքներ, ինչպես նաև ապահովել կոլխոզներում ամենապարզ գործիքների պատրաստումը՝ գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու համար։

10. 1947 թվին ապահովել շաքարի ճակնդեղի համար 397 հազար տոննա հանքային պարարտանյութերի փոխադրումը։

11. Շաքարի ճակնդեղի գծով աշխատանքների մեքենայացումը 1949 թվին հասցնել խոր ցրտահերկի ասպարեզում՝ 100 տոկոսի, նախացանքային կուլտիվացիայի ասպարեզում՝ 85 տոկոսի, ցանքի ասպարեզում՝ 90 տոկոսի, շարամեջ մշակման ասպարեզում՝ 75 տոկոսի, մեքենաներով ճակնդեղ հանելու ասպարեզում՝ 80 տոկոսի և ապահովել ճակնդեղի կոմբայնների կիրառումը։

12. Ապահովել շաքարի ճակնդեղի բերքահավաքի ժամանակին նախապատրաստումը և ճակնդեղի փոխադրումը մթերակայանները, կատարե-



լով ճակնդեղ փորելու մեքենաների վերանորոգում և պատրաստելով համապատասխան գյուղատնտեսական ինվենտար, ինչպես նաև նախապատրաստել կոլխոզների, ՄՏ կայանների և շաքարի գործարանների սայլային ու ավտոմոբիլային տրանսպորտը և դրա լիակատար օգտագործումը, նկատի ունենալով, որ այդ հանդիսանում է կարևորագույն պայմաններից մեկը բերքի կորուստների դեմ մղվող պայքարում և կոլխոզների կողմից պետության առաջ իրենց պարտավորությունները կատարելու գործում։

Շաքարի ճակնդեղացանության շրջաններում տրանսպորտային սպասարկումը բարելավելու նպատակով վերանորոգել սայլային ու խճուղային ճանապարհները և դրանք պահել սարքին վիճակում։ 1947—1950 թվերին կառուցել խճուղիներ և նեղգիծ երկաթուղիներ այն շրջաններում, որտեղ կատարվում են շաքարի ճակընդեղի ամենամեծ փոխադրումներ։

## ԹԵԼԱՎՈՒՇԻ ԵՎ ԿԱՆԵՓԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

13. Նշել վուշի ցանքատարածության մեծ կրճատումը, բերքատվության նվազումը և պետությանը վուշի արտադրանքի հանձնման նվազումը Կիրովի, Կոստրոմայի, Յարոսլավլի, Կալուգայի, Նովոսիբիրսկի, Իվանովոյի մարզերում ու Ուդմուրտական ԱՍՍՌ-ում և կանեփինը՝ Պենզայի, Բրյանսկի, Կուրսկի մարզերում ու Մորդվական ԱՍՍՌ-ում։ Վուշացանությունը և կանեփացանությունը դանդաղ է վերականգնվում նաև Բելոռուսական և Ուկրաինական ՍՍՌ-ներում։

Այդ մարզերում և ռեսպուբլիկաներում պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները պատշաճ ուշադրություն չեն նվիրում վուշացանության և կանեփացանության գործին, որի հետևանքով վուշ և կանեփ մշակելու ագրոտեխնիկան գտնվում է ցածր մակարդակի վրա։ Ցանքը կատարվում է մեծ ուշացումով և վատ նախապատրաստված հո-



ղում։ Բերքահավաքը կատարվում է ուշ ժամանակին և մեծ կորուստներով։ Վուշի և կանեփի սկզբնական մշակումը վատ է կազմակերպված։ Վուշ քաղելու և կալսելու գործի ուշացման հետևանքն է լինում վուշասերմի զգալի կորուստը, իսկ վուշի ցողունների ուշ թրջոց դնելը, թրջոցներում վուշին վատ հսկելը և ժամանակից ավելի թողնելը առաջ է բերում վուշաթելի մեծ կորուստներ և նրա որակի իջեցում։

14. Վուշի և կանեփի արտադրությունն ամենաարագ կերպով վերականգնելու և է՛լ ավելի բարձրացնելու նպատակով՝

1947 թվին ՍՍՌՄ-ում թելավուշի ցանքատարածությունն ավելացնել 366 հազար հեկտարով, այդ թվում կոլխոզներում՝ 223 հազար հեկտարով և 1947 թվին նրա ցանքատարածությունը հասցնել մեկ միլիոն 300 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում՝ մեկ միլիոն 14 հազար հեկտարի, իսկ 1948 թվին մեկ միլիոն 580 հազար հեկտարի, այդ թը-

վում կոլխոզներում մեկ միլիոն 240 հազար հեկտարի։

Ապահովել հնգամյա պլանով 1950 թվի համար սահմանված 800 հազար տոննա վուշաթելի համախառն բերք ստանալու առաջադրանքի անպայման կատարումը և գերակատարումը։

15. Ավելացնել ՍՍՌՄ-ում միջինռուսական և հարավային տեսակի կանեփի ցանքատարածությունը 1947 թվին 108 հազար հեկտարով, այդ թվում կոլխոզներում 67 հազար հեկտարով, հասցնելով նրա ցանքատարածությունը 1947 թվին 337 հազար հեկտարի, իսկ 1948 թվին՝ 506 հազար հեկտարի։

16. Վուշի բերքատվությունը բարձրացնելու համար, ընդարձակել բազմամյա խոտերի՝ երեքնուկի և տիմաֆեևկայի ցանքերը, ապահովելով 1950 թվին հիմնական վուշացան շրջանների կոլխոզներում վուշի ցանումը, որպես կանոն, բազմամյա խոտերի ճիմաշերտի վրա։ Վուշի և կանեփի ցանքերը, սկսած 1948 թվից, ամբողջովին կատարել ցրտահերկի վրա։ Ապահովել



երեք տարվա ընթացքում վուշի և կանեփի ցանքերի կատարումը կոլխոզներում ամբողջովին շարքացաններով, իսկ բերքահավաքն ու կալսումը՝ բերքահավաքի մեքենաներով ու կալսիչներով։

17. Ընդարձակել թելավուշի ու կանեփի սերմնաբուծական կոլխոզների ու կայանների ցանցը, սահմանելով նրանց համար սերմ արտադրելու առաջադրանքներ այն հաշվով, որ առաջիկա երկու երեք տարվա ընթացքում վուշի ու կանեփի ցանքերը լրիվ ապահովվեն սորտային և տեղական բարելավված սերմերով։ Բարելավել ինչպես թելի, այնպես էլ սերմի բարձր բերք տվող թելավուշի ու կանեփի նոր սորտեր ստանալու ուղղությամբ կատարվող սելեկցիոն աշխատանքը։

## ԿԱՈՒՉՈՒԿԱՏՈՒ ԲՈՒՅՍԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

18. Բնական կաուչուկ արտադրելու համար կայուն հումքային բազա արագորեն ստեղծելու նպատակով, անհրաժեշտ համարել զգալիորեն ըն-

դարձակել Ղազախստանի կոլտնտեսություն-ների՝ կոկ-սագըզի, գվայուլայի և տաու-սագըզի ցանքատարածությունը և մեծ չափով բարձրացնել նրանց բերքատվությունը։ Ապահովել կոկ-սագըզի ցանքի պլանի անպայման կատարումը 1947 թվին։ Կոկ-սագըզի ցանքերը 1947—1948 թ.թ. տեղաբաշխել գլխավորապես Բելոռուսական, Ուկրաինական ՍՍՌ-ներում, Չուվաշական և Բաշկիրական ԱՍՍՌ-ներում, Կուրսկի, Վլադիմիրի, Օրյոլի, Տուլայի, Գորկու և Ռյազանի մարզերում։ Կոկ-սագըզի ցանքերը կենտրոնացնել առաջին հերթին այն կոլխոզներում, որոնք ունեն այդ կուլտուրայի մշակման փորձ, թույլ չտալով ցանքերի չափազանց ցրվածություն։

19. Լայնորեն արմատավորել կոկ-սագըզի մշակման առաջավոր ագրոտեխնիկան՝ ցանքը կատարել խոնավ ցրտահերկի վրա, գործադրելով օրգանական և հանքային պարարտանյութեր, ցանքերի հոգատար խնամք, խստիվ պահպանելով ցանքի և մշակման համար սահմանված



ժամկետները։ Սահմանել կոկ-սագըզի սորտային ու բարելավված սերմեր արտադրող սերմնաբուծական կոլխոզների և սովխոզների ցանց։

20. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ Վ. Ի. Լենինի անվան Գյուղատնտեսական գիտությունների Համամիութենական Ակադեմիայի մասնակցությամբ, արագացնել կոկ-սագըզի վեգետատիվ բազմացման եղանակի մշակումը, միաժամանակ այն արմատավորելով արտադրության մեջ, ինչպես նաև մշակել Ուկրաինական ՍՍՌ անջրդի տափաստանային շրջաններում տաու-սագըզ աճեցնելու եղանակը։

ԾԽԱԽՈՏԻ ԵՎ ՄԱԽՈՐԿԱՅԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

21. Նշել ծխախոտի բերքատվության զգալի նվազումը Կրասնոդարի երկրամասում, Ուկրաինական ՍՍՌ-ում, Ղրիմի մարզում և մախորկայի բերքատվության նվազումը Սարատովի, Տամբովի, Ռյազանի մարզերում ու Մորդվական ԱՍՍՌ-ում։ Ծխա-

խոտի և մախորկայի ցածր բերքատը-վության պատճառը հանդիսացավ տե-ղական պարտիական և սովետական օրգանների անբավարար ուշադրու-թյունը այդ կուլտուրաների արտա-դրության նկատմամբ, ագրոտեխնի-կայի խախտումը, բերքի կորուստը բերքահավաքի ժամանակ, ինչպես և ջերմոցային ու չորանոցային տնտե-սության անբավարար վիճակը։

Ավելացնել ծխախոտի ցանքատա-րածությունը 15,3 հազար հեկտարով ու մախորկայինը՝ 32 հազար հեկտա-րով և 1947 թվին ծխախոտի ցանքա-տարածությունը հասցնել 98,2 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում՝ 83,8 հազար հեկտարի, և մախորկա-յինը՝ 129 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում 116,5 հազար հեկտարի, իսկ 1948 թվին՝ ծխախո-տինը 101,4 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում 87 հազար հեկ-տարի և մախորկայինը 141 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում 123 հազար հեկտարի։

22. Ապահովել ջերմոցային տնտե-



սության կազմակերպումը բոլոր ծխախոտացան կոլխոզներում՝ վաղ ժամկետներում ծխախոտի ու մախոր-կայի սածիլներ աճեցնելու համար պահանջվող լրիվ չափով։

1947—1948 թ. թ. վերականգնել ծխախոտ և մախորկա չորացնելու համար բոլոր կոլխոզներում գոյու-թյուն ունեցող չորանոցները, ինչպես նաև ծավալել նոր չորանոցների շի-նարարությունը այն հաշվով, որ յու-րաքանչյուր ծխախոտացան կոլխոզ ունենա իր պահանջները լրիվ բավա-րարող չորանոցներ։ Ծխախոտին և մախորկային հատկացնել մոլախոտից ազատ և ցրտահերկ արված լավա-գույն պարարտացված հողեր։

Ծխախոտի ու մախորկայի տնկումը և խնամքը կատարել ագրոտեխնիկա-կան լավագույն ժամկետներում, լրիվ պահպանելով տնկելու խտության նորմաները, իսկ այդ կուլտուրաների բերքահավաքն ավարտել մինչև ցրտե-րը վրա հասնելը, թույլ չտալով բերքի կորուստ, մանավանդ բերքահավաքի և չորացման շրջանում։

## ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

23. Ապահովել բոժոժի նախապատերազմյան մակարդակից ոչ պակաս համախառն բերքի ստացումը 1948 թվին։

Անհանդուրժելի համարել վերջին տարիները թույլ տրված թթաստանների խիստ կրճատումը, թթենիների կտրումը, թթաստաններում անասուններ արածացնելը և թթենիների չորացումը, մանավանդ Ուզբեկական, Ղազախական, Թուրքմենական և Կիրգիզական ՍՍՌ-ներում։ Հաշվի առնելով, որ շերամապահության զարգացման հիմնական պայմանն է կերի բազայի ամենաարագ վերականգնումը ու ընդարձակումը, զգալիորեն ընդարձակել թթաստանների տարածությունը, բարելավել նրանց խնամքը, վերացնել պլանտացիաների նոսրությունը և լայնորեն արմատացնել թթենու բերքատատ սորտերը։

Միջին Ասիայի և Անդրկովկասի շրջաններում շերամապահությունն էլ ավելի զարգացնելու հետ միասին,



միջոցներ ձեռք առնել ընդարձակելու շերամապահությունը և ստեղծելու կերի բազա թե՛ թթենու և թե՛ կաղնու որդի համար ՌՍՖՍՌ-ում, Ուկրաինական և Մոլդավական ՍՍՌ-ներում։

Ծավալել հարանյակ մարեցնելու, բոժոժ չորացնելու շենքերի և սերմնագործարանների նոր շինարարությունը։

## ՑԻՏՐՈՒՍԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԵՎ ԹԵՅԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

24. Մերձարևադարձային շրջանների գյուղատնտեսական, պարտիական և սովետական օրգանների առջև խնդիր դնել՝ զգալիորեն ավելացնել ցիտրուսային կուլտուրաների և կանաչ թեյատերևի բերքատվությունը։ 1948 թվին գերազանցել սորտային կանաչ թեյատերևի հավաքման նախապատերազմյան մակարդակից։

1947 թվին ցիտրուսային կուլտուրաների տարածությունը հասցնել 20,8 հազար հեկտարի և թեյի պլանտացիաների տարածությունը՝ 55,6 հազար հեկտարի, այն հաշվով, որ

արդեն 1949 թվին ցիտրուսային կուլ-
տուրաների տարածությունը հասնի
27,5 հազար հեկտարի և թեյի պլան-
տացիաներինը՝ 60 հազար հեկտարի։

Ցիտրուսային կուլտուրաների տա-
րածության ավելացումը կատարել
բացառապես նարինջի և կիտրոնի
տնկումներով։

Ապահովել մերձարևադարձային
մյուս պտղատու կուլտուրաների զար-
գացումը (ծիթապտուղ, թուզ, նուռ,
խուրմա)։

25. 1947—1948 թ. թ. ընթացքում
վերացնել թեյի պլանտացիաների
նոսրությունը և 1949 թվին ավարտել
սակավաբեր ցիտրուսային ծառերի
վերապատվաստումը։ Ապահովել պլ-
անտացիաների պատշաճ խնամքը և
թույլ չտալ պարզացումներ ագրո-
տեխնիկայում։

26. Ցիտրուսային կուլտուրաները
մերձարևադարձային գոտու համե-
մատաբար ցածր ջերմաստիճան ու-
նեցող շրջաններում տարածելու հա-
մար, կազմակերպել սելեկցիոն աշ-
խատանք նարինջի և կիտրոնի ցրտա-



կայուն, վաղահաս և բերքատու
սորտեր ստանալու ուղղությամբ,
ներգրավելով այդ աշխատանքին,
բացի գիտահետազոտական հիմ-
նարկներից, նաև փորձարար կոլ-
խոզնիկներին, այգեգործներին և ագ-
րոնոմներին։

Գործադրել ցիտրուսային և թեյի
պլանտացիաների գյուղատնտեսա-
կան վնասատուների ու հիվանդու-
թյունների դեմ պայքարելու անհրա-
ժեշտ միջոցներ և առաջիկա երկու—
երեք տարվա ընթացքում ոչնչացնել
վարակի բները։ 1947 թվին ապահո-
վել հանքային պարարտանյութերի
և քիմիական թույների ստացումը թե-
յի ու ցիտրուսային կուլտուրաների
համար և լայնորեն օգտագործել կա-
նաչ պարարտացումն ու տեղական
օրգանական պարարտանյութերը։

1947 թվին Վրացական ՍՍՌ-ին
ցիտրուսային կուլտուրաների և թեյի
համար հատկացնել 84 հազար տոն-
նա հանքային պարարտանյութ, այդ
թվում 45 հազար տոննա ազոտային
պարարտանյութ։

## ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

27. 1947 թվին ապահովել կոլխոզների կողմից 16 հազար 700 հեկտար մրգատու նոր այգիների, 6.700 հեկտար հատապտուղների և 11 հազար 400 հեկտար խաղողի այգիների տնկումը, և 1948 թվին՝ 25 հազար հեկտար մրգատու այգիների, 10 հազար հեկտար հատապտուղների և 16 հազար հեկտար խաղողի այգիների տնկումը, միաժամանակ բարձրացնելով գոյություն ունեցող մրգատու այգիների, հատապտուղների ու խաղողի այգիների բերքատվությունը։

28. Ամրապնդել գոյություն ունեցող կոլխոզային և պետական տընկարանները և կազմակերպել նորերը այն հաշվով, որ տնկանյութով ապահովվի նոր մրգատու այգիների, խաղողի այգիների և հատապտուղների տնկումը, նրանց նորոգումը, ինչպես և մրգատու ծառերի ու խաղողի վազերի տնկումը կոլխոզնիկների, բանվորների ու ծառայողների տնամերձ հողամասերում։



29. Պարտավորեցնել Գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությանը՝ 1948 թվից վերսկսել հատուկ այգեգործական մեքենաների արտադրությունը (այգեգործական գութաններ, ցաքաններ, կուլտիվատորներ, պլանտաժի գութաններ), և մրգատու ու խաղողի այգիների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու ապարատների, ինչպես նաև այգեգործական մանր ինվենտարի արտադրությունը։

## ՍՈՅԱՅԻ ԵՎ ՏԻԶԿԱՆԵՓԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

30. Նշել սոյայի և տիզկանեփի ցանքատարածության չափազանց դանդաղ վերականգնումը։ Սոյայի և տիզկանեփի ցանքատարածությունն ու բերքատվությունը առանձնապես դանդաղ է վերականգնվում Կրասնոդարի երկրամասում և Ուկրաինական ՍՍՌ-ում։

1947 թվին սոյայի ցանքատարածությունն ավելացնել 52 հազար հեկտարով, այդ թվում կոլխոզներում 29

հազար հեկտարով, հասցնելով ցան-
քատարածությունը 274 հազար հեկ-
տարի, այն հաշվով, որ 1948 թվին
սոյայի ցանքատարածությունը լիովին
վերականգնվի և հասնի նախապատե-
րազմյան չափի: Տիզկանեփի բնա-
գավառում 1947 թվին ցանքատարա-
ծությունը կոլխոզներում ավելացնել
48 հազար հեկտարով, հասցնելով
այդ տարածությունը 112,5 հազար
հեկտարի, իսկ 1948 թվին 150 հազար
հեկտարի:

31. Սոյայի և տիզկանեփի բարձր
ու կայուն բերք ստանալու համար,
այդ կուլտուրաների ցանքը կատարել
ցրտահերկի դաշտում, իսկ Հեռավոր
Արևելքում սոյայի ցանքերը կատարել
ցելահողերում: Բարելավել սոյայի և
տիզկանեփի նոր բերքատու սորտեր
ստանալու սելեկցիոն աշխատանքը,
լայնորեն արմատացնելով արտա-
դրության մեջ շրացվող կնգուղներ
ունեցող տիզկանեփի սորտերը: Սոր-
տային սերմերի արտադրությունն ա-



վելացնել կոլխոզներում այն հաշ-
վով, որ 1949 թվին սոյայի և տիզկա-
նեփի ամբողջ ցանքատարածությունն
ապահովվի սորտային սերմերով:

ՋԻԹԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ
ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

32. Ապահովել արևածաղկի ցանքի
տարածության ավելացումը 105 հա-
զար հեկտարով և հասցնել 1947
թվին 3 միլիոն 100 հազար հեկտարի,
իսկ 1948 թվին՝ երեք միլիոն 392
հազար հեկտարի. գանգրավուշի տա-
րածությունը ավելացնել 40 հազար
հեկտարով և 1947 թվին հասցնել 238
հազար հեկտարի, իսկ 1948 թվին՝
336 հազար հեկտարի: Մանանեխի
տարածությունը 1947 թվին հասցնել
286 հազար հեկտարի և 1948 թվին՝
300 հազար հեկտարի: Ռիժիկի ցան-
քատարածությունը 1947 թվին հասց-
նել 223 հազար հեկտարի:

33. Սկսած 1947 թվից, ապահո-
վել ծիթատու կուլտուրաների ցան-
քերի կատարումը ցրտահերկի վրա,
բարելավել հողի նախացանքային

մշակումը և ցանքի կուլտիվացիան, ձիթատու կուլտուրաների լայնաշար ցանքերում (արևածաղիկ, քունջութ, կակաչ, սաֆլոր, պերիլլա և արախիս) լայնաշար ցանքերում կատարել առնվազն շարամեջ երեք մշակում, միաժամանակ քաղհան կատարելով շարքերում։

34. Այսուհետև անհանդուրժելի համարել ձիթատու կուլտուրաների և մանավանդ արևածաղկի բերքահավաքի ուշացումը, որի հետևանքով կորչում է բերքի զգալի մասը։ Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, տեղական պարտիական և սովետական օրգաններին՝ ապահովել 1947 և հաջորդ տարիներին ձիթատու կուլտուրաների բերքահավաքի ժամանակին կատարումը, իսկ Գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությանը պարտավորեցնել կազմակերպել ձիթատու կուլտուրաների բերքահավաքի կոմբայնների համար հարմարանքների արտադրությունը, դրանց պահանջը լրիվ բավարարելու քանակությամբ։



## ԿԱՐՏՈՖԻԼԻ ԵՎ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

35. 1947 թվին կարտոֆիլի ցանքատարածությունը ՍՍՌՄ-ում ընդարձակել 647 հազար հեկտարով և հասցնել 8 միլիոն 318 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում երկու միլիոն 682 հազար հեկտարի, իսկ 1948 թվին 9 միլիոն 108 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում երեք միլիոն 45 հազար հեկտարի։

36. 1947 թվին ՍՍՌՄ-ում բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակել 138 հազար հեկտարով, այդ թվում կոլխոզներում 120 հազար հեկտարով, որից սոխինը 26 հազար հեկտարով և կաղամբինը 49 հազար հեկտարով։ 1947 թվին բանջարանոցային կուլտուրաների ցանքը հասցնել մեկ միլիոն 800 հազար հեկտարի, այդ թվում կոլխոզներում 835 հազար հեկտարի, իսկ 1948 թվին երկու միլիոն հեկտարի, այդ թվում կոլխոզներում 900 հազար հեկտարի։

Մոլոտովի, Սվերդլովսկի, Չելյաբինսկի, Կեմերովոյի և Մոսկվայի մարզերի, Ալթայի երկրամասի, Ուդմուրտական ԱՍՍՌ-ի, Վրացական, Հայկական և Ադրբեջանական ՍՍՌ-ների պարտիական և սովետական կազմակերպությունների առջև, որտեղ կոլխոզներում հասել և անցել են կարտոֆիլի ու բանջարեղենի արտադրության նախապատերազմյան մակարդակից, խնդիր դնել՝ է՛լ ավելի ընդարձակել այդ կուլտուրաների ցանքատարածությունը և բարձրացնել նրանց բերքատվությունը։ Հարավային և հարավ-արևելյան շրջաններում երկու տարվա ընթացքում վերականգնել կարտոֆիլի ամառային տնկումների նախապատերազմյան տարածությունը։

Նշել, որ Ռյազանի, Սարատովի և Տամբովի մարզերը, փոխանակ ավելացնելու կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունը, թույլ են տվել բանջարեղենի և կարտոֆիլի բերքատվության և համախառն բերքի իջեցում։



37. Միջոցներ ձեռք առնել է՛լ ավելի ամրացնելու և զարգացնելու կարտոֆիլա-բանջարանոցային ու անասնաբուծական բազաները Մոսկվայի, Լենինգրադի, Բաքվի, Խարկովի, Կիևի, Գորկու, Ստալինգրադի շուրջը, Ուրալի, Դոնբասի, Կուզբասի արդյունաբերական կենտրոնների, Սիբիրի ու Հեռավոր Արևելքի քաղաքների և այլ խոշոր քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների շուրջը, այն հաշվով, որ լիովին ապահովվի սեփական արտադրության բանջարեղենի, կարտոֆիլի, և զգալի չափով կաթի ու մսի մատակարարումը այդ կենտրոններին, ինչպես նաև ապահովել ջերմոցային տնտեսության առավելագույն զարգացումը՝ քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների բնակչությանը ձմեռա-գարնանային շրջանում վաղահաս բանջարեղեն ու կանաչեղեն մատակարարելու համար։ Ավելացնել կարտոֆիլի արտադրությունը սպիրտի և օսլայա-պատոկային արդյունաբերության գոտիներում, մանավանդ Ռյազանի,

Բրյանսկի, Օրյոլի, Վլադիմիրի, Գորկու, Իվանովոյի, Յարոսլավլի, Տուլայի, Սմոլենսկի, Չերնիգովի, Ժիտոմիրի և Մոգիլևի մարզերում, այն հաշվով, որ առաջիկա երկու—երեք տարում զգալիորեն բարձրանա կարտոֆիլային հումքի բաժինը սպիրտի արտադրության մեջ, մեծ չափով կրճատելով հացահատիկի ծախսումը սպիրտ արտադրելու համար։

Ընդարձակել բանջարեղենի արտադրությունը կոնսերվի գործարանների գոտիներում, մանավանդ Աստրախանի և Ղրիմի մարզերում, Կրասնոդարի երկրամասում, Դաղստանյան ԱՍՍՌ-ում, Ադրբեջանական, Ուզբեկական, Ուկրաինական և Մոլդավական ՍՍՌ-ներում, այն հաշվով, որ հումքով լրիվ ապահովվի կոնսերվի գործարանների պահանջը։

Կարտոֆիլի և բանջարեղենի բերքատվությունը բարձրացնելու, կարտոֆիլ և բանջարեղեն աճեցնելու համար ոռոգելի տարածությունը զգալիորեն ընդարձակելու նպատակով, պարտավորեցնել Գյուղատնտեսական մեքե-



նաշինության մինիստրությանը՝ պատրաստել անձրևասարքեր, Ծանր մեքենաշինության մինիստրությանը՝ պատրաստել նավթի շարժիչներ, Մեքենաշինության և գործիքաշինության մինիստրությանը՝ պատրաստել ջրապոմպեր՝ ոռոգումը ժամանակին կատարելու համար անհրաժեշտ քանակությամբ։ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը պարտավորեցնել մշակել նոր ոռոգիչ սարքերի տիպեր։

## III

## ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Վերականգնել և 1948 թվի. վերջերին գերազանցել խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների ու այծերի գլխաքանակի և 1949 թվի վերջերին՝ խոզերի գլխաքանակի նախապատերազմյան մակարդակը։ Մինչև հնգամյակի վերջը զգալիորեն անցնել նախապատերազմյան մակարդակից մրթերատու անասունների բոլոր տեսակների բնագավառում. մինչև 1950

թվի վերջը կոլխոզներում ձիերի գլխաքանակն ավելացնել 58 տոկոսով՝ 1946 թվի համեմատությամբ։

Բարձրացնել անասունների մթերատվությունը՝ միս, կաթ, բուրդ և մառաղաշ ստանալու բնագավառում, հասնելով 1948 թվին կաթի ու բրդի ստացման և 1949 թվին՝ մսի ստացման նախապատերազմյան մակարդակին, զգալիորեն գերազանցել այդ մակարդակը հնգամյակի վերջում։

Ապահովել անասնաբուծության և նրա մթերատվության զարգացումը, ստեղծելով կերի կայուն բազա, վերացնելով մայր անասունների ստերջությունը, լայնորեն գործադրելով անասունների արհեստական սերմնավորումը և վճռաբար բարելավելով տոհմաբուծական աշխատանքը՝ կոլխոզներում և սովխոզներում մթերատու ցեղերը լայնորեն արմատացնելու համար։

Նշել, որ Ղազախական ՍՍՌ պարտիական և սովետական օրգանները 1941—1946 թ. թ. ժամանակաշրջա-



նում ապահովել են ձիերի, խոշոր եղջերավոր անասունների և ոչխարների ընդհանուր գլխաքանակի ավելացումը, նույն ժամանակաշրջանում խոշոր եղջերավոր անասունների և ոչխարների գլխաքանակն ավելացրել են Կալինինի, Մոսկվայի մարզերը ու Չուվաշական ԱՍՍՌ-ն և խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը՝ Գորկու, Իվանովոյի մարզերը և Յակուտական ԱՍՍՌ-ն։ Ոչխարների և այծերի գլխաքանակն ավելացրել են Վրացական, Ադրբեջանական, Թուրքմենական ՍՍՌ-ները, Արխանգելսկի մարզը և Խաբարովսկի երկրամասը։

Միևնույն ժամանակ, այն բանի հետևանքով, որ տեղական պարտիական և սովետական օրգանները 1941-ից մինչև 1946 թ. թ. ժամանակաշրջանում անբավարար են ղեկավարել անասնաբուծության զարգացումը, թույլ է տրվել խոշոր եղջերավոր անասունների և ոչխարների ընդհանուր գլխաքանակի կրճատում Բաշկիրական ԱՍՍՌ-ում, Ալթայի, Կրասնոյարսկի երկրամասերում, Նովոսիբիրսկի, Սարատովի

և Օմսկի մարզերում։ Նույն ժամանակաշրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կրճատել են Վոլոգդայի, Կիրովի, Իրկուտսկի, Չիտայի մարզերը, Բուրյաթ-Մոնղոլական ԱՍՍՌ-ն և ոչխարների գլխաքանակը կրճատել են Ուլյանովսկի, Չկալովի մարզերն ու Թաթարական ԱՍՍՌ-ն։

Պարտավորեցնել պարտիական և սովետական կազմակերպություններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին՝ 1947 թվի պետական պլանին և հնգամյա պլանին համապատասխան՝

## ԽՈՇՈՐ ԵՂՋԵՐԱՎՈՐ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

1. 1947 թվին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացնել 5,2 միլիոն գլխով և մինչև 1948 թվի հունվարի 1-ը հասցնել 52 միլիոն գլխի, այդ թվում կոլխոզներում ավելացնել 2,6 միլիոն գլխով և հասցնել 18,4 միլիոն գլխի, իսկ մինչև



1949 թվի հունվարի 1-ը՝ 56,1 միլիոն գլխի, այդ թվում կոլխոզներում՝ 21,2 միլիոն գլխի և կովերի գլխաքանակը մինչև 1948 թվի հունվարի 1-ը հասցնել 24,7 միլիոն գլխի, այդ թվում կոլխոզներում 4,4 միլիոն գլխի, իսկ մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 27,2 միլիոն գլխի, այդ թվում կոլխոզներում 6 միլիոն գլխի։

2. Անասնաբուծության զարգացման ասպարեզում լուրջ թերություն համարել այն, որ շատ կոլխոզներում գոյություն ունեն կովերի սակավաթիվ գլխաքանակ ունեցող մանր ֆերմաներ, որոնք չեն ապահովում անասնաբուծության մթերքի բավարար քանակությամբ արտադրումը՝ պետության հանդեպ պարտավորությունները կատարելու և կոլխոզնիկներին աշխօրերի դիմաց տալու համար։ Տամբովի մարզում մեկ ֆերմային միջին հաշվով ընկնում է միայն 6 կով, Կիրովի մարզում՝ 7 կով, Պենզայի մարզում՝ 8 կով։ Առանձնապես անթույլատրելի է այն, որ մի շարք մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում

մի քանի կոլխոզներ բոլորովին մայր անասուններ չունեն ֆերմաներում։ Կիրովի մարզի ֆերմաներում կով չունի 586 կոլխոզ, Ռյազանի մարզում՝ 108 կոլխոզ, Տամբովի մարզում՝ 53 կոլխոզ։

Պարտավորեցնել պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին՝ 1947—1948 թ. թ. ընթացքում ապահովել կաթնապրանքային ֆերմաների կազմակերպումը բոլոր կոլխոզներում, իսկ 1950 թվի վերջերին հասնել այն բանին, որ բոլոր կոլխոզներն ունենան ֆերմաներ՝ օրենքով սահմանվածից ոչ պակաս մայր անասունների գլխաքանակով։ Այն կոլխոզներում, որոնք կատարել են կովաբուծության գծով նրանց համար սահմանված նվազագույնը, անասունների քանակն ավելացնելու պլանային առաջադրանք հանձնելիս, ելնել գլխաքանակի հետագա ավելացման անհրաժեշտությունից։

3. Կարևոր խնդիրներից մեկը համարել 2—3 տարվա ընթացքում կովազրկության և անասնազրկության



վերացումը կոլխոզնիկների մեջ։ Այդ նպատակով 1947-1948 թ. թ. ընթացքում կովազուրկ կոլխոզնիկների համար կազմակերպել պետական օգնություն վարկով՝ հորթ ձեռք բերելու համար։

Պարտավորեցնել տեղական պարտիական, սովետական օրգաններին և կոլխոզների վարչություններին՝ ամեն կերպ օգնություն ցույց տալ կոլխոզնիկներին, նրանց պատկանող անասունները կոշտ և հյութալի կերով, ինչպես նաև արոտավայրերով ապահովելու գործում։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը և նրա տեղական օրգաններին՝ կոլխոզների հանրային անասնաբուծության ասպարեզում զոոտեխնիկական և անասնաբուժական միջոցառումներ գործադրելիս, զոոտեխնիկական և անասնաբուժական օգնություն ցույց տալ կոլխոզնիկների անձնական օգտագործման մեջ գտնվող անասնաբուծությանը։

4. Մինչև 1947 թվի վերջը ապա-

Յովեն կոլխոզային ֆերմաներում մեկ կովի միջին կաթնատվության բարձրացումը 15 տոկոսով, համեմատած 1946 թվի հետ և 1948 թվի վերջերին 15 տոկոսով՝ 1947 թվի դիմաց։

Պարտավորեցնել պարտիական և սովետական օրգաններին, ՍՍՌՄ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությանը, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին՝ ապահովել յուղի արտադրության զգալի ավելացումը բոլոր մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում և մանավանդ ալրանքային յուղագործությամբ վաղուց հռչակված շրջաններում՝ Սիբիրում, Արխանգելսկի, Վոլոգդայի, Մոլոտովի և Կիրովի մարզերում՝ կոլխոզներում կովերի գլխաքանակի արագ աճման, նրանց մթերատվության բարձրացման, կերի կայուն բազայի ստեղծման և կաթնագործարանների ցանցի լայն զարգացման հիման վրա։



5. Սխալ համարել, որ կոլխոզների համար հնարավորություն չէր ընտեղծվել կաթի մթերման դիմաց յուղ հանձնելու համար, նրանց չէին վաճառվում սերզատներ, և կոլխոզները, պետական յուղագործարանների բավարար ցանցի բացակայության պայմաններում, ստիպված են կաթը տանել շատ հեռու ընկած պետական մթերակայանները և յուղագործարանները, որի հետևանքով կաթի զգալի մասը յուղի չի վերամշակվում և մեծ քանակությամբ կաթ է փչանում։ Գոյություն ունեցող յուղագործարանները, մթերակայանները և կոլխոզները անբավարար են ապահովվում կաթի ամանեղենով, սարքավորումով և ռեակտիվներով՝ կաթի յուղայնությունը որոշելու համար։ Այդ բոլորի հետևանքն է լինում այն, որ պետությունը զգալի քանակությամբ յուղ պակաս է ստանում, իսկ կոլխոզները մեծ կորուստներ են կրում։

Յուղի արտադրությունը զգալիորեն ավելացնելու նպատակով, պարտավորեցնել ՍՍՌՄ Մսեղենի և կաթ-

նեղենի արդյունաբերության մինիստրությանը՝ կոլխոզներից, կոլխոզնիկներից և գյուղացիական տնտեսություններից, բանվորներից և ծառայողներից անարգել յուղ ընդունել, կաթ հանձնելու գծով նրանց պարտավորությունների կատարման հաշվին։

Կաթի գործարանները, կաթի մթերման կայանները, կոլխոզները, սովխոզները, կոլխոզնիկներին և գյուղացիական տնտեսությունները սերջատներով, կաթի ամաններով և լաբորատորային սարքավորումով ապահովելու համար, 1947 թվին ապահովել հետևյալի արտադրությունը. սերջատներ 150 հազար հատ, կաթի բիտոններ 850 հազար, տակառներ 242 հազար, կաթաչափիչներ 143,5 հազար, ցենտրոֆուգներ 21 հազար, կարագաչափեր 500 հազար հատ։ Կոլխոզների և կաթնարդյունաբերության համար առանձնացնել ծծմբաթթվի և ամիլային սպիրտի անհրաժեշտ քանակություն։



6. Նշել, որպես լուրջ թերություն, այն հանգամանքը, որ կոլխոզներում վատ է կազմակերպված անասունների գիրացումը և բտումը, որի հետևանքով պետությանը հանձնվում են զգալի քանակով միջին գիրությունից ցածր անասուններ, որով լուրջ վնաս է հասցվում պետությանը և կոլխոզներին, որովհետև պետությունը ստանում է ցածրորակ միս, իսկ կոլխոզները ստիպված են հանձնել ավելորդ քանակությամբ անասուններ։

Սահմանել խոշոր եղջերավոր անասունների գիրացման պլան 1947 թվին կոլխոզներում 2 միլիոն գլուխ և 1948 թվին՝ 2,2 միլիոն գլուխ. այն հաշվով, որպեսզի կոլխոզները հետագայում դադարեցնեն մսամթերման դիմաց միջինից ցածր գիրության անասունների հանձնումը և զգալիորեն ավելացնեն միջինից բարձր գիրություն ունեցող և չաղ անասունների հանձնումը։

7. Հաշվի առնելով մսատու անասնապահությունը զարգացնելու հա-

մար մեծ քանակությամբ արոտատեղիների առկայությունը Ղազախական, Կիրգիզական ՍՍՌ-ներում, Հյուսիսային Կովկասի, Պովոլժյեի, Հարավային Ուրալի ու Արևելյան Սիբիրի շրջաններում, առաջարկել ՍՍՌ Միության Մինիստրների Սովետին՝ քննարկել և որոշել մսատու անասնաբուծության լայն զարգացման հարցը հիշյալ շրջաններում ամառային և ձմեռային արոտատեղիները ավելի լրիվ օգտագործելու հիման վրա, այդ արոտատեղիները ջրով ապահովելու ասպարեզում անցկացնելով լայն միջոցառումներ։

8. Մթերային բազաների անբավարար ցանցի կապակցությամբ, որի հետևանքով կոլխոզները և սովխոզները ստիպված են անասունները տեղափոխել մեծ տարածություններ, պարտավորեցնել ՍՍՌՄ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությանը՝ բարելավել կոլխոզներից և սովխոզներից անասունների ընդունման կազմակերպումը, ընդլայնել մթերման բազաները և կազ-



մակերպել մթերված անասունների գիրացումը ավելի լայն չափերով։

ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ
ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

9. Ավելացնել ոչխարների և այծերի գլխաքանակը 1947 թվին 15,6 միլիոն գլխով, որից կոլխոզներում 6,9 միլիոն գլխով և այն հասցնել մինչև 1948 թվի հունվարի 1-ը 84,7 միլիոն գլխի, որից նրբագեղմ և կիսակոպտ բուրդ ունեցող ոչխարներինը՝ 20,1 միլիոն գլխի և մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 97,8 միլիոն գլխի, որից նրբագեղմ և կիսակոպտ բուրդ ունեցող ոչխարներինը՝ 27,2 միլիոն. ոչխարների և այծերի գլխաքանակը հասցնել կոլխոզներում մինչև 1948 թվի հունվարի 1-ը 46 միլիոն գլխի, որից նրբագեղմ և կիսակոպտ բուրդ ունեցող ոչխարներինը 14,4 միլիոն գլխի և մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 53,7 միլիոն գլխի, որից նրբագեղմ և կիսակոպտ բուրդ ունեցող ոչխարներինը՝ 18,9 միլիոն գլխի։

10. Նշել, որ մի շարք մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկանե-

րում, մանավանդ Ալթայի, Կրասնոյարսկի երկրամասերում, Նովոսիբիրսկի, Օմսկի, Չկալովի, Կույբիշևի և Սարատովի մարզերում հարկ եղած ուշադրություն չի նվիրվում նրբագեղմ ոչխարաբուծության զարգացմանը։ Խիստ կրճատվել է նախապատերազմյան տարիներին լայն կերպով կիրառվող ոչխարների արհեստական բեղմնավորումը, որի հետևանքով նվազել է նրբագեղմ և կիսակոշտ բուրդ ունեցող ոչխարների գլխաքանակը և կրճատվել է նրբագեղմ ու կիսակոշտ բրդի մթերումը։

Պարտավորեցնել պարտիական ու սովետական օրգաններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության Մինիստրությանը և ՍՍՌՄ Սովխոզների Մինիստրությանը՝ հնգամյա պլանին համապատասխան ապահովել նրբագեղմ և կիսակոշտ բուրդ ունեցող ոչխարաբուծության հետագա զարգացումը, մանավանդ Հյուսիսային Կովկասի, Ղազախական, Կիրգիզական, Ուկրաինական ՍՍՌ-ների, Արևմտյան Սիբիրի, Ղրիմի մարզի և Պովոլժյեի շրջանն-



րում, ինչպես նաև մուշտակի մորթ և
միս ու գմակ տվող ոչխարաբուծու-
թյան՝ նրա տարածման շրջաններում։

ԽՈԶԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

11. Ավելացնել խոզերի գլխաքա-
նակը 1947 թվին 4,8 միլիոն գլխով և
այն հասցնել մինչև 1948 թվի հուն-
վարի 1-ը 13,4 միլիոն գլխի և մինչև
1949 թվի հունվարի 1-ը՝ 20,3 միլիոն
գլխի, որից կոլխոզներում 1947 թվին
ավելացնել գլխաքանակը 2,2 միլիոն
գլխով ու այն հասցնել մինչև 1948
թվի հունվարի 1-ը՝ 4,6 միլիոն գլխի և
մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 6,3
միլիոն գլխի։

12. Հաշվի առնելով, որ խոզերի տարբեր ցեղերի խաչաձևումից ստացվող խոզերի գիրությունը զգալի չափով ավելի բարձր է, հանձնարարել կոլխոզներին և սովխոզներին լայն կերպով կիրառել ցեղամիջյան խաչաձևման մեթոդը։

Կոլխոզներում խոզաբուծության համար կերի բազա ապահովելու նպատակով կատարել եգիպտացորենի,

բանջարանոցային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի հատուկ ցանքեր, պատրաստել սիլոս, առվույտից և երեքնուկի խոտից ալյուր, կազմակերպել խոզերի արածացում։

## ՁԻԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

13. 1947 թվին ավելացնել ձիերի գլխաքանակը 1.100 հազար գլխով և այն հասցնել մինչև 1948 թվի հունվարի 1-ը 11,9 միլիոն գլխի, որից 1947 թվին կոլխոզներում 1946 թվի դիմաց ավելացնել ձիերի գլխաքանակը 700 հազար գլխով ու այն հասցնել 7,3 միլիոն գլխի և մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 12,9 միլիոն գլխի, որից կոլխոզներում 8,2 միլիոն գլխի։ Միջոցներ ձեռք առնել բարելավելու համար պետական ցեղային անասնաբուծարանների, կոլխոզային ցեղական անասնաբուծության ֆերմաների և պետական ցեղական ձիաբուծարանների աշխատանքը, լիակատար կերպով օգտագործելու նրանցում եղած արտադրողներին, ավելացնել



կոլխոզային ցեղային ձիաբուծական ֆերմաների թիվը. լայն կերպով զարգացնել տափաստանային շրջանների կոլխոզներում երամակներով պահվող ձիաբուծությունը։

14. Պարտավորեցնել ռեսպուբլիկաների մինիստրների սովետներին, երկրամասային գործկոմներին, մարզային գործկոմներին՝ տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկություններում կազմակերպել ձիաքարշ փուռակի, ձիասարքի պատրաստումը և վերանորոգումը, պայտերի, պայտի մեխերի, թաղիքի, ձյութի, անվայուղի և փայտածուխի արտադրությունը։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Թեթև արդյունաբերության մինիստրությանը 1947 թվից ավելացնել ձիասարքի, թամբերի, ձի մաքրելու ինվենտարի, թաղիքի, հում կաշվի արտադրությունը։

15. Կազմակերպել կոլխոզներում կենդանի քաշող ուժը ավելացնելու համար լծկան եզների աճեցումը և կոլխոզներում լծկան եզների գլխաքանակը հասցնել մինչև 1948 թ․ի հուն-

վարի 1-ը 3,5 միլիոն գլխի և մինչև 1949 թվի հունվարի 1-ը՝ 4,1 միլիոն գլխի։

16. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, տեղական պարտիական և սովետական օրգաններին՝ բարելավել գյուղատնտեսության անասնաբուժական սպասարկումը։ Հասնել անասունների հիվանդությունների և անկման խիստ նվազեցմանը։ Կազմակերպել շրջանային անասնաբուժարանների, զոոանասնաբուժական տեղամասերի, անասնաբուժական-ֆելդշերային կայանների և անասնաբուժական բակտերիոլոգիական լաբորատորիաների շենքերի կառուցումը և վերանորոգումը։

Զգալիորեն բարելավել կոլխոզներին, սովխոզներին և զոոանասնաբուժական ցանցին դեղորայք, ախտահանման միջոցներ, գործիքներ և սարքավորում մատակարարելու գործը։ Վերականգնել և ավելացնել անասնաբուժական սարքավորման, դեղորայքի, ախտահանող միջոցների արտադրու-



թյունը և հասցնել այնպիսի մակարդակի, որը կարող է լիովին ապահովել անասնաբուժության կարիքները։ Կազմակերպել անասնաբուժական ստանդարտ դեղարկղների թողարկումը կոլխոզների ու սովխոզների համար և անասնաբուժական գործիքների թողարկումը անասնաբուժարանների և անասնաբուժական-ֆելդշերային կայանների համար։

## ՑԵՂԱԿԱՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

17. Համարել ոչ ճիշտ, որ տեղական պարտիական և սովետական օրգանները թերագնահատում են ցեղական անասնաբուծության նշանակությունը և հաշվի չեն առնում, որ ցեղական անասունների գլխաքանակի ավելացումը հնարավորություն կտա ավելի արագորեն բարձրացնել անասնաբուծության մթերատվությունը։ Շատ կոլխոզներում և սովխոզներում չի կազմակերպված ցեղական արտադրողների աճեցումը։ Անբավարար է կազմակերպված մետիսա-

յին և մանավանդ տեղական անասուններից բարձր մթերատվություն ունեցող անասուններ ընտրելու և զարգացնելու աշխատանքը։ Չի կատարված անասունների ցեղական շրջանացում։ Մինչդեռ ցեղական անասունները տալիս են առավել բարձր մթերատվություն։

Պարտավորեցնել պարտիական և սովետական օրգաններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը և ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը՝ վերականգնել ու կազմակերպել նոր ցեղական անասնաբուծական սովխոզներ, պետական ցեղական անասնաբուծարաններ և կոլխոզներում ցեղական անասնաբուծության ֆերմաներ։ Ապահովել բոլոր կոլխոզային ֆերմաները մինչև հնգամյակի վերջը, անասունների բոլոր տեսակների գծով ցեղական լավ հատկություններ ունեցող ազնվացեղ արտադրողներով։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ 3 ամսվա ընթացքում ներկայացնել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի քն-



նարկմանը առաջարկներ ցեղական անասնաբուծության գործը բարելավելու և գյուղատնտեսական անասունների ցեղերը շրջանացնելու ասպարեզում։

18. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների Մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին՝ ապահովել անասունների առանձին տեսակների մեջ ցեղական աշխատանքի անցկացումը հետևյալ ուղղությամբ. ձիաբուծության գծով՝ ձիերի աշխատունակության և դիմացկունության բարձրացումը և հասակի ավելացումը, խոշոր եղջերավոր անասունների գծով՝ կաթի և մսի մթերատվության, կաթի յուղայնության հետագա բարձրացումը, շուտ հասունանալու ընդունակության և կենդանի քաշի ավելացումը. ոչխարաբուծության գծով՝ ոչխարների նրբագեղմ և կիսակոշտ բուրդ ունեցող տեսակների վերականգնումը և հետագա կատարելագործումը, նրանց բրդատվության և մսայնության բարձրացու-

մը, ինչպես նաև ոչխարների կոշտ բուրդ ունեցող տեսակների հետագա կատարելագործումը. խոզաբուծության գծով՝ տեղական ճարպատու տեսակների կատարելագործումը, պտղավետության, շուտ հասունանալու ընդունակության բարձրացումը։

19. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, պարտիական և սովետական օրգաններին՝ միջոցներ ձեռք առնել լայն կերպով կիրառելու արհեստական բեղմնավորումը՝ ավելացնել անասունների քանակի հետագա ավելացման և անասնաբուծության մթերատվության բարձրացման համար և արհեստական բեղմնավորման կայանները համալրել ցեղական լավ հատկություններով օժտված արտադրողներով։ 1947 թվին արհեստական սերմնավորումը հասցնել ոչխարներինը՝ 7,6 միլիոն գլխի, կովերինը՝ 640 հազար գլխի և 1948 թվին ոչխարներինը՝ 11 միլիոն գլխի և կովերինը՝ 820 հազար գլխի։ Միութենական և տեղական արդյունաբերության ձեռ-



նարկություններում ապահովել անհրաժեշտ գործիքների արտադրություն արհեստական սերմնավորման կայանների համար։

Կազմակերպել գյուղատնտեսական անասունների արհեստական սերմնավորման համար հրահանգիչների և տեխնիկների կադրերի նախապատրաստումը, պետական բյուջեի հաշվին ընդունել արհեստական սերմնավորման կայանների համար կադրերի պատրաստման և այդ կայաններին անհրաժեշտ սարքավորում հայթայթելու ծախսերը։

## ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

20. Անհրաժեշտ գտնել հաղթահարելի ջրային թռչնաբուծական ցանքեր ունեցող ամեն մի կոլխոզում կազմակերպել թռչնաբուծական ֆերմա, իսկ ջրամբարներ ունեցող կոլխոզներում կազմակերպել ջրային թռչունների ֆերմաներ։

1947 թվին ավելացնել թռչունների գլխաքանակը կոլխոզներում առնվազն երկու անգամ, իսկ 1948 թվին՝ առ-

նվազն երեք անգամ 1946 թվի համե-
մատությամբ։

Բարելավել գոյություն ունեցող ին-
կուբատորային-թռչնաբուծական կա-
յանների աշխատանքը և 1947—1948
թ. թ. ընթացքում կառուցել 120 նոր
կայան, ծավալելով նոր ինկուբատոր-
ների արտադրությունը։

Լայնորեն զարգացնել կոլխոզնիկնե-
րի, բանվորների և ծառայողների անձ-
նական օգտագործման թռչնաբուծու-
թյունը։ 1947—1948 թ. թ. կազմա-
կերպել ինկուբացման համար ձվերի
ընդունումը և ինկուբատորային-
թռչնաբուծական կայանների ճտերի
վաճառումը կոլխոզնիկներին, բան-
վորներին ու ծառայողներին արտոն-
յալ պայմաններով։

## ԿԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

21. 1947 թվին կոլխոզներում կոշտ
կերի հավաքումը հասցնել 95 միլիոն
տոննայի, այդ թվում հանրային ա-
նասնաբուծության համար՝ 76 միլիոն
տոննայի՝ 1948 թվին հասցնել 105
միլիոն տոննայի, այդ թվում հանրա-



յին անասնաբուծության համար՝ 84
միլիոն տոննայի։

Կոլխոզներում կերի կուլտուրաների
ցանքատարածությունը հասցնել հե-
տևյալ չափի՝ բազմամյա խոտերինը՝
1947 թվին 3 միլիոն 450 հազար հեկ-
տարի, 1948 թվին 5 միլիոն 200 հա-
զար հեկտարի, միամյա խոտերինը՝
1947 թվին մեկ միլիոն 597 հազար
հեկտարի և 1948 թվին մեկ միլիոն
952 հազար հեկտարի. կերի արմա-
տապտուղների և բոստանային կուլ-
տուրաների ցանքատարածությունը
(դդում, կերի ձմերուկ) 1947 թվին
հասցնել 547 հազար հեկտարի և 1948
թվին՝ 638 հազար հեկտարի։

Կազմակերպել մարգագետինների և
արոտավայրերի բարելավման ու նր-
անց բերքատվության բարձրացման
միջոցառումների անցկացումը ան-
տառահատումներով և խոտեր ցանե-
լով, մանավանդ Բարաբինյան տա-
փաստանի շրջաններում, Հյուսիսային
Դվինա, Վոլգա, Օկա, Կամա և այլ
գետերի հեղեղվող ափերում։

Սիլոսի պատրաստումը հասցնել

1947 թվին 23 միլիոն տոննայի և 1948 թվին՝ 25 միլիոն տոննայի։ Այդ նպատակով սիլոսային կուլտուրաների ցանքը 1947 թվին հասցնել 426 հազար հեկտարի և 1948 թվին՝ 543 հազար հեկտարի։

Մարգագետնա-արոտավայրային խոտերի սերմնաբուծությունը բարելավելու համար ստեղծել սերմնաբուծարանների ցանց, կազմակերպել կերի արմատապտուղների ու բոստանային կուլտուրաների սերմնաբուծություն, հասցնելով դրանց սերմերի արտադրությունը առաջիկա երկու տարում այնպիսի չափի, որ լիովին ապահովվի կոլխոզների և սովխոզների պահանջը և ստեղծվի սերմերի պետական պահեստի ֆոնդ։

Նշել, որ մի շարք մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում տեղական պարտիական և սովետական օրգանները վատ են զբաղվում անասնաբուծության կերի բազա ստեղծելու գործով։ Կեմերովոյի, Նովոսիբիրսկի, Օմսկի, Չկալովի, Կոստրոմայի մարզերի, Ստավրոպոլի և



Կրասնոյարսկի երկրամասերի կոլխոզներում 1946 թվին չի կատարվել խոտհնձի պլանը. մարգագետինների մեծ տարածություններ մնացել են չըհնձված, մինչդեռ կոլխոզների անասունները չեն ապահովվել ձմեռվա կերով։

22. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ 1947—1948 թ. թ. վերականգնել ՄՏԿ-ներին կից մեքենայական խոտհնձի ջոկատները, համալրել այդ ջոկատները անհրաժեշտ թվով մեքենաներով, իսկ Գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությանը՝ 1947 թվին կազմակերպել լայնաթև խոտհունձ մեքենաների ու փոցխերի պահեստի մասերի արտադրությունը և 1948 թըվին կազմակերպել լայնաթև խոտհունձ մեքենաների ու փոցխերի արտադրությունը։

23. Պարտավորեցնել պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին՝ միջոցներ ձեռք առնել բարելավելու կոլխոզների անասունների ապահովվածությունը շենքերով.

դրա համար կոլխոզներում ծավալել անասնաբուծական շենքերի շինարարություն և այդ նպատակով տեղական շինանյութերի (աղյուսի, կղմինդրի, կրի և այլ նյութերի) արտադրությունը։ Տափաստանային շրջանների կոլխոզներին ամեն կերպ օգնություն ցույց տալ շինափայտ հայթայթելու գործում։ Պարտավորեցնել Ցենտրոսոյուզին՝ ավելացնել շինանյութերի՝ ապակու, մեխի, ցեմենտի և այլ նյութերի ուղարկումը, ինչպես և երկաթեղենի ու գործիքների ուղարկումը՝ կոլխոզներին վաճառելու համար։

24. Աշխատանք ծավալել անասնաբուծական ֆերմաներում մեքենայացումն արմատացնելու ուղղությամբ, առաջին հերթին ֆերմաներին ջուր մատակարարելու, կեր պատրաստելու, ներֆերմային փոխադրության համար, իսկ էլեկտրիֆիկացված կոլխոզներում, բացի դրանից, կովերի էլեկտրական կթի և ոչխարների բրդի էլեկտրական խուզման համար։ 1947 թվից Գյուղատնտեսական մե-



քենաշինության մինիստրության և տեղական արդյունաբերության ձեռնարկություններում կազմակերպել մեքենաների արտադրություն՝ անասնաբուծական ֆերմաների մեքենայացման համար։

25. Լատվիական, Լիտվական, Էստոնական, Մոլդավական ՍՍՌ-ների, Ուկրաինական և Բելոռուսական ՍՍՌ-ների արևմտյան մարզերի գյուղացիական տնտեսություններին անասունների ցեղայնությունը բարելավելու և նրանց մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում օգնություն ցույց տալու նպատակով, պարտավորեցնել տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին՝ կազմակերպել պետական և կոոպերատիվ բեղմնակայանների ու արհեստական սերմնավորման կետերի լրացուցիչ ցանց՝ խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների, խոզերի և ձիերի համար, իսկ չունևոր կովազուրկ տնտեսություններին պետական օգնություն ցույց տալ վարկով՝ անասուններ ձեռք բերելու համար։

## IV

## ՑԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՄՏՑՆԵԼՈՒ, ԽՈՏԱՑԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴԱՐՁԱԿԵԼՈՒ ԵՎ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱՆ ՈՒ ՈՌՈԳՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Պարտավորեցնել պարտիական և սովետական կազմակերպություններին, ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և նրանց տեղական օրգաններին.

1. Հնգամյակի ընթացքում բոլոր կոլխոզներում և սովխոզներում ավարտել ճիշտ ցանքաշրջանառություններ մտցնելը, կիրառելով նրանց մեջ խոտացանություն, լայնորեն օգտագործելով լոբազգիների և բազմամյա խոտաբույսերի խառնուրդը։

Ցանքաշրջանառություններ մտցնելիս ապահովել՝

ա) որ կոլխոզներում և սովխոզներում ցանքաշրջանառությունները կառուցված լինեն այն խնդիրներին



համապատասխան, որոնք սահմանված են մարզերի և շրջանների գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման հնգամյա պլանով, ինչպես նաև յուրաքանչյուր կոլխոզի ու սովխոզի կոնկրետ տնտեսական ու բնական պայմաններին համապատասխան.

բ) այն շրջաններում, որոնք բացի արդյունավետ մարգագետիններից և արոտավայրերից, ունեն նաև հերկելու համար ազատ հողեր, նախատեսել նոր հողերի մտցնելը ցանքաշրջանառության մեջ, հաշվի առնելով դրանց օգտագործումը առաջիկա տարիներին ցանքի և ցելի համար։

Ոռոգելի շրջանների կոլխոզներում նախատեսել այն ոռոգելի հողերի վերականգնումը, որոնք դուրս են մնացել գյուղատնտեսական շրջանառությունից, ինչպես նաև նոր հողերի օգտագործումը ի հաշիվ ոռոգելի հողերի ավելացման.

գ) ՍՍՌՄ տափաստանային շրջաններում գյուղատնտեսական արտադրության զոնալ առանձնահատկու-

թյուններին համապատասխան, մտցնել ցանքաշրջանառություններ խոտացանության ու սև ցելի գործադրումով։ Բավարար խոնավությամբ շրջաններում և մանավանդ ոչ սևահողային գոտում, դաշտերը մոլախոտերից մաքրվելուն զուգընթաց, հողերն ավելի լրիվ օգտագործելու նպատակով գործադրել զբաղված ցելեր։ Ոռոգելի հողագործության շրջաններում մտցնել կանոնավոր ցանքաշրջանառություններ, գործադրելով խոտացանություն առանց մաքուր ցելերի։

Սիբիրի, Ուրալի շրջաններում և Ղազախական ՍՍՌ-ի հյուսիս-արևելյան մարզերում ապահովել խոպան և հարոսային հողերի օգտագործումը գարնանացան ցորենի համար, իսկ տափաստանային շրջաններում դրա հետ միասին օգտագործել նաև կրկնավար արված բոլոր մաքուր ցելերը։

Այս շրջանների կոլխոզներում և սովխոզներում բազմամյա խոտասերմեր պակաս լինելու դեպքում ժամանակավորապես նախատեսել խոտա-



ցանության փոխարեն ցելի տարածության ավելացումը։

2. Մտցված ցանքաշրջանառությունների պահպանման և ցանքատարածությունների պլանները ընդունված ցանքաշրջանառություններին անցնելու պլաններին համապատասխանեցնելու պատասխանատվությունը մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում դնել մարզային, երկրամասային գործկոմների նախագահների և ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետների նախագահների վրա, իսկ շրջաններում շրջգործկոմների նախագահների վրա։

3. Հաշվի առնելով, որ սահմանված չափի սերմնաբուծական հողամասերից կոլխոզները լիակատար հնարավորություն ունեն իրենց ապահովել պահանջվող քանակությամբ լավ սերմերով, պահպանել կոլխոզների սերմնաբուծական հողամասերից սերմացուի կուտակման գործող կարգը, թույլ չտալով, որ նախքան պետական պարտադիր մթերում կատարելը, ընդհանուր ցանքերից ստացված

հացահատիկը ծախսվի որպես սեր-
մացու։
Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատըն-
տեսության մինիստրությանը, տեղա-
կան պարտիական և սովետական օր-
գաններին՝ ապահովել բերքատվության
ավելացումը սերմնաբուծական հողա-
մասերում, կոլխոզներում կազմակեր-
պել սերմնաբուծական հողամասերի
հատուկ խնամք, սերմֆոնդերի ժամա-
նակին հավաքումը, կալսումը, զտու-
մը, պահպանումը և այսուհետև
լրիվ կերպով ծածկել սերմացուի կա-
րիքը ի հաշիվ կոլխոզների սերմնա-
բուծական հողամասերի, չդիմելով
պետական փոխատվության։
4. Հնգամյա պլանի առաջադրանք-
ներին համապատասխան վերականգ-
նել բազմամյա խոտերի հնձովի տա-
րածությունը և 1948 թվին հասցնել
նախապատերազմյան մակարդակին՝
այն հաշվով, որպեսզի մինչև հնգամ-
յակի վերջը տնտեսությունների բոլոր
կատեգորիաների գծով այդ տարածու-
թյունը հասցվի 21,4 միլիոն հեկտարի
և կոլխոզների գծով՝ 15,3 միլիոն



հեկտարի։ Յուրաքանչյուր կոլխոզում
և սովխոզում կազմակերպել բազմամ-
յա խոտասերմերի արտադրություն՝
այն հաշվով, որպեսզի մոտակա 2-3
տարում կոլխոզներն ու սովխոզները
կարողանան լրիվ ապահովել ցան-
քաշրջանառության դաշտերը սեփա-
կան խոտասերմերով։ Կոլխոզներում
բազմամյա խոտերի սերմնաբուծա-
րանների տարածությունը 1947 թվին
հասցնել 1.267 հազար հեկտարի, իսկ
1948 թվին՝ 1.500 հազար հեկտարի։
Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղա-
տընտեսության մինիստրությանը,
ՍՍՌՄ Սովխոզների մինիստրու-
թյանը և նրանց օրգաններին, տեղա-
կան պարտիական և սովետական
օրգաններին՝ ապահովել կոլխոզներում
և սովխոզներում բազմամյա խոտա-
սերմերի բերքատվության վճռական
բարձրացումը և սերմացուի արտա-
դրության ավելացումը, բարելավելով
ագրոտեխնիկան խոտերի սերմնաբու-
ծարաններում, առանձնացնելով ան-
հրաժեշտ քանակությամբ հանքային
պարարտանյութեր և ժամանակին ա-

պահովելով խոտասերմերի բերքահավաքը, կալսումը և մաքրումը։

Առվույտի և երկու անգամ հնձվող երեքնուկի սերմացուի բերքն ավելացնելու նպատակով առաջիկա 2-3 տարվա ընթացքում կատարել երեքնուկի և առվույտի լայնաշարք ցանքեր՝ շարամեջ մշակության կիրառումով՝ ցանքի տարում սերմ ստանալու համար, և լայնորեն կիրառել առվույտի ամառային ցանքերը մաքուր լավ մշակված ցելերում Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Ղրիմի և Մոլդավական ՍՍՌ-ի շրջաններում։

Միջոցներ ձեռք առնել զարգացնելու համար բազմամյա լոբազգիների և հացաբույսերի, մանավանդ ժիտնյակի սերմնաբուծությունը Պովոլժյեի շըրջաններում, կազմակերպելու սերմնաբուծական կոլխոզների և սովխոզների ցանց, խոտասերմերի սերմնաբուծմանը մասնակից դարձնելու սելեկցիոն կայանները և փորձակայանները, գիտա-հետազոտական ինստիտուտները և գյուղատնտեսական բուհերի ուսումնական տնտեսությունները։



5. Դաշտերի խոտակալումը ամենաարագ կերպով վերացնելու համար ամենուրեք պահովել 20—22 սանտիմետր խորության հերկի պահպանումը, իսկ հերկման պակաս հորիզոն ունեցող հողամասերում՝ նրա ամբողջ խորությամբ, աստիճանաբար խորացնելով հերկման շերտը։ 1947 թվին լիովին օգտագործել բոլոր եղած նախախոփերը, 1948 թվին գութանները տրքավորել նախախոփերով՝ այն հաշվով, որպեսզի ՄՏ կայանների տրակտորային հերկի առնվազն կեսը կատարվի նախախոփեր ունեցող գութաններով, իսկ 1949 թվին լիովին անցնել նախախոփեր ունեցող գութաններով հերկմանը։ Լայն կերպով կիրառել դաշտերում սկավառակավոր կամ տեղական գութաններով երեսվարը։

6. Բերքատվության բարձրացման գործում պարտիական և սովետական օրգանների կարևոր խնդիրներից մեկը համարել տեղական պարարտանյութերի՝ գոմաղբի, տորֆի, փանա-

զան կոմպոստների, մոխրի և այլ նյութերի կուտակման, արտադրության և կիրառման զգալի ավելացումը։

Ապահովել յուրաքանչյուր տարի աշնանացան և գարնանացան կուլտուրաների պարարտացման համար կիրառվող տեղական պարարտանյութերի քանակի բարձրացումը, ձգտելով, որպեսզի 1947 թվին հողի մեջ մտցվող տեղական պարարտանյութերի քանակությունը 1946 թվի դիմաց կրկնապատկվի։

Ապահովել լյուպինի և այլ կուլտուրաների որպես կանաչ պարարտանյութի ցանքի ավելացումը ոչ սևահողային գոտու շրջաններում, մանավանդ ավազոտ հողերում։ Կազմակերպել լյուպինի սերմնաբուծությունը այս նպատակով հատուկ ընտրված կոլխոզներում և սովխոզներում, արմատավորել անալկոլոիդ (քաղցր) լյուպինի ցանքը։

7. Երկրի տափաստանային շրջաններում խոնավությունը կուտակելու և ճիշտ օգտագործելու նպատակով



կատարել ձյան և ձնաջրերի շրջապատումը հողաթմբերով և նրանց պահպանումը։ Ապահովել դաշտերը պաշտպանող անտառային գոտու տնկման պլանների կատարումը, ինչպես նաև տունկերի ճիշտ խնամքը, սահմանել անտառահատման խիստ ռեժիմ ջրբաժաններում և մեծ գետերի ակունքներում։ Արգելել տափաստանային շրջաններում, մանավանդ Սիբիրում և Ղազախստանի հյուսիս-արևելյան մարզերում անտառների և միջանտառակների հատումը։ Լայն կերպով ծավալել կոլխոզներում և սովխոզներում լճակների և ջրամբարների կառուցումը։

8. Միջին Ասիայի և Անդրկովկասի ռեսպուբլիկաներում նոր իրրիգացիոն շինարարություն անցկացնելու և ջրովի հողերում ցանքատարածությունը ընդլայնելու հետ միասին ապահովել ոռոգման զգալի զարգացումը Միջին ռուսական բարձրավանդակի շրջաններում (Կուրսկի, Վորոնեժի, Օրյոլի, Տամբովի մարզեր), Պովոլժյեի, Հյուսիսային Կովկասի,

Ղրիմի, Ուկրաինայի, Արևմտյան Սիբիրի շրջաններում և Ղազախական ՍՍՌ չորոգվող շրջաններում, նպատակ ունենալով ստեղծել հացահատիկային, տեխնիկական և գյուղատնտեսական այլ կուլտուրաների ապահովված բերքի հողամասեր։

Ապահովել իրրիգացիոն շինարարության և ոռոգիչ սիստեմների մաքրման գործի մեքենայացման լայն վարգացումը, նկատի ունենալով այդ աշխատանքներում ձեռքի աշխատանքի ծախսման կրճատումը, ինչպես նաև շինարարական և շահագործման աշխատանքների տեմպերի ու որակի բարձրացումը։

Այս նպատակով կազմակերպել հող հանող և հիդրոմոնիտորային սարքերի, հող փորող կցորդ մեխանիզմների, էքսկավատորների և պայթեցման աշխատանքների համար հորատող սարքավորման արտադրությունը բավարար չափերով։

Ջրային տնտեսության ղեկավարությունը բարելավելու համար ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիս-



տրությունում ամրացնել Ջրային տնտեսության գլխավոր վարչությունը, նրան կցելով անհրաժեշտ նախագծային, շինարարական և մատակարարող կազմակերպությունները։

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությունում ունենալ իրրիգացիայի և մելիորացիայի հարցերի գծով մինիստրի տեղակալ։

9. Կազմակերպել կոլխոզային յարովիզատորների կադրերի պատրաստումը՝ այն հաշվով, որպեսզի սկսած 1948 թվից անցկացվեն յարովիզացված սերմերով հացահատիկային հասկային կուլտուրաների և կորեկի ցանքեր այն շրջաններում, որոնք մինչև պատերազմը կիրառում էին յարովիզացիան։

10. Լայն չափերով կիրառել աշնանացանի տափանումը, նրա պարարտացումը տեղական և հանքային պարարտանյութերով, ինչպես նաև ապահովել ժամանակին փխրեցումը շարքերում և լայնաշարք կուլտուրաների ցանքերում շարամեջ տարածությունների խնամքով մշակումը։

11. ՍՍՌՄ Արևելյան շրջաններում, ինչպես նաև ոչ սևահողային գոտու և Ուրալի շրջաններում հացահատիկային կուլտուրաների բերքի փչացումը վերացնելու նպատակով ապահովել կոլխոզներում և սովխոզներում հացահատիկի չորանոցների, ծածկված կալատեղերի և ծածկերի կառուցումը։

12. Գյուղատնտեսության գծով գիտա-հետազոտական աշխատանքի բնագավառում Վ. Ի. Լենինի անվան Գյուղատնտեսական գիտությունների համամիութենական Ակադեմիայի և գյուղատնտեսության գծով այլ գիտական հիմնարկությունների առաջ դնել հետևյալ հիմնական խնդիրները.

ա) մշակել ՍՍՌՄ գյուղատնտեսական առանձին գոտիների համար այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովում են հացահատիկային, յուղատու, տեխնիկական, բանջարանոցային կուլտուրաների, կարտոֆիլի և բազմամյա խոտերի բարձր և կայուն բերքի ստացումը. միջոցա-



ռումներ հողի պտղաբերությունը վերականգնելու և բարձրացնելու, երաշտին, սառնամանիքին, հիվանդություններին և վնասատուներին դիմացող և բարձր բերք տվող գյուղատնտեսական կուլտուրաների տեսակներ աճեցնելու, միջոցառումներ գյուղատնտեսության ընդհանուր կուլտուրայի բարձրացման համար.

բ) մշակել միջոցառումներ անասնաբուծությունը բարձրացնելու, անասունների ցեղը բարելավելու, նրա մթերատվությունը բարձրացնելու համար.

գ) ուժեղացնել գիտա-հետազոտական աշխատանքը գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման, մանավանդ կոլխոզների հանրային տնտեսությունը ամեն կերպ զարգացնելու, սովխոզների և ՄՏ կայանների էկոնոմիկան ամրապնդելու բնագավառում։

Փորձնական սելեկցիոն կայաններում, հենակետերում և գյուղատնտեսության ասպարեզում գիտա-հետազոտական հիմնարկությունների

ատորին ցանցի մյուս օղակներում հետազոտական աշխատանքի մակարդակը բարձրացնելու նպատակով գիտական աստիճաններ ունեցող անձանց համար աշխատանքի վարձատրությունը հավասարեցնել գիտահետազոտական ինստիտուտներում նրանց համար սահմանված վարձատրությանը։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը և ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը, տեղական պարտիական և սովետական կազմակերպություններին՝ միջոցներ ձեռք առնել արտադրության մեջ արագորեն արմատավորելու համար գյուղատնտեսական գիտության նվաճումները, դիտելով այդ աշխատանքը որպես գյուղատնտեսության բարձրացման կարևորագույն պայման։

13. Շրջանային սերմնաբուծական տնտեսություններում 1947 թվից սկսած սերմնաբուծական աշխատանքի հետ միասին կազմակերպել գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ագրոտեխնիկայի ասպարեզում փորձնական աշխատանքի անց-



կացում, այն հաշվով, որպեսզի շրջանային սերմնաբուծական տնտեսությունները դառնան իրենց աշխատանքը առաջավոր ագրոնոմիական գիտության և արտադրական փորձի հիման վրա վարող օրինակելի տնտեսություններ։

14. Նպատակ դնելով լայնորեն ցուցադրել և արմատավորել սովխոզների, մեքենա-տրակտորային կայանների, կոլխոզային անասնաբուծական ֆերմաների, գիտական հիմնարկությունների, լավագույն շրջանների, մարզերի, երկրամասերի ու ռեսպուբլիկաների, ինչպես նաև սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորների և կազմակերպիչների նվաճումները ու ամեն կերպ ծավալել գյուղատնտեսության հետագա վերելքի համար սոցիալիստական մրցությունը, անհրաժեշտ համարել 1950 թվից վերսկսել Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի աշխատանքը, ըստ աշխատանքի հանրագումարների սկսելով 1947 թվից։

## V

## ՄԵՔԵՆԱՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

1. Սահմանել, որ մեքենատրակտորային կայանների հիմնական խնդիրը հանդիսանում է բարձրացնել բերքատվությունը սպասարկվող կոլխոզներում, էլ ավելի բարելավել մեքենատրակտորային պարկի օգտագործումը, բարձրացնել տրակտորային աշխատանքների որակը և այդ աշխատանքները կատարել ագրոտեխնիկական ժամկետներում, ժամանակին հավաքել բերքը և կատարել ՄՏ կայանների աշխատանքի համար բնավարձի հանձնման պլանները։

2. Սահմանել, որ ՄՏ կայանների և տրակտորային բրիգադների արտադրական պլանները համարվում են կատարված միայն այն դեպքում, երբ կատարվել է տրակտորային աշխատանքի պլանը ըստ հիմնական



տեսակների՝ գարնանահերկ, նախացանքային կուլտիվացիա, գարնանացան, ցելի հերկումը և մշակումը, շարահերկ կուլտուրաների կուլտիվացիա, բերքահավաք, աշնանացան, ցրտահերկ սահմանված ժամկետներում և բնավարձի հանձնման պլանը անպայման կատարելու պայմանով։

Պարտավորեցնել ՄՏ կայանների դիրեկտորներին՝ տրակտորային բրիգադներին տրվող արտադրական առաջադրանքներում սահմանել աշխատանքի յուրաքանչյուր տեսակի ծավալը և պարտադիր ագրոտեխնիկական պահանջները, ըստ որակի՝ հերկի խորությունը, մշակումները, ցանքի նորմաները, սերմացուն հողի մեջ գցելու խորությունը և աշխատանքի ժամկետները։

Գյուղատնտեսության շրջանային բաժինների գլխավոր ագրոնոմների վրա, գյուղատնտեսության ռեսպուբլիկական, երկրամասային, մարզային վարչությունների գլխավոր և ավագ ագրոնոմների վրա դնել ՄՏ կայանների տրակտորային աշխատանքների

որակի նկատմամբ վերահսկող պետական տեսուչների պարտականությունները։

3. 1947 թվից սկսած վերացնել ՄՏ կայանների ղեկավար աշխատողների և մասնագետների պարգևատրման գոյություն ունեցող սիստեմը՝ որպես մի սիստեմ, որը չի համապատասխանում տրակտորային աշխատանքների որակի բարելավման և սպասարկվող կոլխոզներում բերքատվության բարձրացման խնդիրներին։ Սահմանել, որ մրցանակներ պետք է տրվեն տրակտորային կարևորագույն աշխատանքները՝ ցելի հերկումը և մշակումը, կոմբայններով բերքահավաքը և ցրտահերկը ժամանակին կատարելու համար, բնավարձի հանձնման պլանների կատարման և գերակատարման համար։ Սահմանել, որ տրակտորային աշխատանքների ինքնարժեքի պլանները չկատարելու դեպքում, բնավարձի հանձնման պլանները կատարելու և գերակատարելու առթիվ պարգևատրումը նվազեցվում է 15—20 տոկոսով։ Պար-



տավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ ներկայացնել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առաջարկներ ՄՏ կայանների ղեկավար աշխատողներին և մասնագետներին պարգևատրելու մասին։

4. Տրակտորային աշխատանքների որակը բարելավելու և սպասարկվող կոլխոզներում բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում տրակտորիստների պատասխանատվությունը և շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով 1947 թվից սահմանել տրակտորիստների և տրակտորային բրիգադների մյուս աշխատողների կողմից վաստակած աշխօրերի վարձատրման հետևյալ կարգը.

ա) տալ երաշխավորված մինիմում յուրաքանչյուր աշխօրին երեք կիլոգրամ հացահատիկի չափով տրակտորիստին, բրիգադիրին, բրիգադիրի օգնականին, հաշվառու-հայթայթողին, այն դեպքում, երբ նրանք կատարել են տրակտորային տվյալ բրիգադայի կողմից մշակվող կոլխոզների հողա-

մասերում բերքատվության սահման-
ված պլանը. բերքատվության սահ-
մանված պլանը չկատարելու դեպ-
քում տալ երաշխավորված մինիմում
երկու կիլոգրամ հացահատիկի չա-
փով.

ռ) Հանձնարարել կոլխոզներին
լրացուցիչ վարձատրություն տալ
պլանից դուրս ստացած բերքի հա-
մար տրակտորիստներին, տրակտո-
րային բրիգադների բրիգադիրնե-
րին, նրանց օգնականներին, հաշվա-
ռու-հայթայթողներին և կցորդներին
իրենց կողմից մշակվող հողամասե-
րում վաստակած աշխօրերին համա-
պատասխան դաշտավարական բրի-
գադայի կամ օղակի կոլխոզնիկների
հետ համահավասար։

Պարտավորեցնել ՄՏ կայանների
դիրեկտորներին՝ տրակտորիստներին
չպարգևատրել վառելանյութի խնայո-
ղության համար այն դեպքում, երբ
կոլխոզում ստացվել է պլանից ցածր
բերքատվություն, իսկ տրակտորային
բրիգադան չի կատարել տրակտորա-
յին աշխատանքների պլանը և չի



վաստակել պլանով նախատեսված
չափով բնավարձ։

5. Տրակտորային աշխատանքների
որակի բարելավման և ՄՏ կայանի
մեքենաները խնամելու ասպարեզում
ՄՏ կայանների կցորդ մեքենաների
վրա աշխատող կոլխոզնիկների պա-
տասխանատվությունը և նրանց շա-
հագրգռվածությունը բարձրացնելու
համար նպատակահարմար գտնել, որ
կոլխոզի կողմից առանձնացված՝
կցող մեքենայի վրա աշխատողը դաշ-
տային աշխատանքների ժամանակա-
շրջանում մտցվում է տրակտորային
բրիգադայի կազմի մեջ։

6. Լիովին վերականգնել ՄՏ կա-
յանների և սպասարկվող կոլխոզների
միջև կնքված պայմանագրերի նշա-
նակությունը, պայմանագրեր, որոնք
բնորոշում են ՄՏ կայանների և կոլ-
խոզների փոխադարձ պարտավորու-
թյունները և դատապարտել պայմա-
նագրերի կատարման նկատմամբ ար-
համարհական վերաբերմունքի պրակ-
տիկան։

Նշել, որ կոլխոզներից մի մասում

չափելով՝ անկախ աշխատանքների կատարման ժամկետներից, բնավարձի գանձման գոյություն ունեցող պրակտիկան նվազեցնում է ՄՏ կայանների պատասխանատվությունը տրակտորային աշխատանքները ժամանակին կատարելու ասպարեզում և այն հետևանքն է ունենում, որ բնավարձի գրանցումը կատարվում է միատեսակ չափով ինչպես ժամկետին կատարված աշխատանքների համար, այնպես էլ ուշացումով կատարված աշխատանքների համար։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը և Մթերումների մինիստրությանը՝ երկու ամսվա ընթացքում ՍՍՌՄ Մինիստրների Սովետին ներկայացնել առաջարկներ տրակտորային աշխատանքների հիմնական տեսակների գծով (գարնանահերկ, նախացանքային կուլտիվացիա, գարնանացան, ցելի հերկում, բերքահավաք, աշնանացան և ցրտահերկ) բնավարձի դրույքների մասին, հաշվի առնելով բերքատվությունը և մեքենա-տրակ-



տորային կայանի կողմից աշխատանքը կատարելու ժամկետները։

7. Տեխնիկական սպասարկման գործը բարելավելու և տրակտորների, կոմբայնների ու գյուղատնտեսական մեքենաների վերանորոգումը կատարելու համար սահմանել վերանորոգող ձեռնարկությունների հետևյալ տիպերը.

ա) ՄՏ կայաններին կից արհեստանոցներ. գլխավորապես տրակտորների, կոմբայնների և ամեն տեսակ գյուղատնտեսական մեքենաների. գործիքների ընթացիկ վերանորոգումը անցկացնելու համար բացի բարդ վերանորոգման օպերացիաներից, այն է ծնկաձև գլանների հղկումը, բաշխիչ գլանների վերանորոգումը, բլոկների սրումը, վառելիքային ապարատուրայի, էլեկտրոսարքավորման վերանորոգումը։

Տեխնիկական խնամքի կիրառման և տրակտորների, կոմբայնների ու գյուղատնտեսական մեքենաների թերությունները վերացնելու գործում տրակտորային բրիգադներին օգնու-

թյուն ցույց տալու համար դաշտային աշխատանքների ժամանակաշրջանում ՄՏ կայաններին կից արհեստանոցի կազմում ունենալ շարժական ավտոարհեստանոցներ, որոնք ունեն փականագործական-մոնտաժային գործիքների հավաքածու, դազգահ, շարժական դարբնոցային քուրա և սյոմնիկների կոմպլեկտ։ Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ 1947—1948 թվերին փոխադրել ՄՏ կայանները ավտոնորոգման շարժական 10 հազար արհեստանոց, որոնցից 1947 թվին՝ 3 հազար և 1948 թվին՝ 7 հազար.

բ) հիմնական վերանորոգման միջշրջանային արհեստանոցներ (15—20 ՄՏ կայանի համար) տրակտորային և կոմբայնային շարժիչների լիակատար հիմնական վերանորոգում կատարելու, ինչպես նաև ագրեգատ-մագնետոների, դինամոների առանձին հանգույցները վերանորոգելու համար, ծնկաձև գլանների, բաշխիչ գլանների հղկման, բլոկները սրելու,



վառելիքային ապարատուրա՝ կցող ագույցներ վերանորոգելու համար.

գ) վերանորոգման գործարաններ (1—2-ը յուրաքանչյուր մարզի համար) ավտոմեքենաների հիմնական և ընթացիկ վերանորոգում կատարելու, ՄՏ կայանների համար դազգահներ և ստացիոնար շարժիչներ վերանորոգելու, ՄՏ կայանների արհեստանոցների և տրակտորային բրիգադների համար վերանորոգման սարքավորում, սյոմնիկներ և հարմարանքներ պատրաստելու համար։

8. ՄՏ կայաններին կից վերանորոգման արհեստանոցները, հիմնական վերանորոգման միջշրջանային արհեստանոցները և վերանորոգման գործարանները սարքավորումով ապահովելու նպատակով անհրաժեշտ համարել գյուղտնտեսության համար (ՄՏ կայանների ու սովխոզների համար) առանձնացնել 25 հազար մետաղահատ դազգահ։

Այս կապակցությամբ առաջարկել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին երկու

ամսվա ժամկետում քննարկել և որոշումներ ընդունել.

ա) ՄՏ կայաններին կից արհեստանոցների, հիմնական վերանորոգման միջշրջանային արհեստանոցների և վերանորոգման գործարանների տիպային սարքավորումը որոշելու մասին.

բ) 1947 թվին 20 հազար սարքին, չօգտագործվող միտաղահատ դազգահներ ժողովրդական տնտեսությունից՝ առավելապես քաղաքացիական և ռազմական մեքենաշինական ձեռնարկություններից վերցնելու մասին.

գ) 1947—1948 թվերի ընթացքում արտադրության հաշվին գյուղատնտեսության համար 5 հազար դազգահ առանձնացնելու մասին.

դ) վերանորոգման արհեստանոցներն ու գործարանները ըստ մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների ու ըստ դազգահների հիմնական խմբերի մետաղահատ դազգահներով կոմպլեկտավորելու ժամկետների մասին.

ե) սույն որոշման համապատաս-



խան կազմակերպվող վերանորոգման գործարանների համար անհրաժեշտ քանակությամբ դարբնոցային-մամլող սարքավորում, էլեկտրասարքավորում, էլեկտրազոդող և այլ սարքավորում առանձնացնելու մասին։

9. 1947—1949 թվերի ընթացքում ապահովել արհեստանոցներ չունեցող ՄՏ կայաններին կից վերանորոգման 631 արհեստանոցի, հիմնական վերանորոգման միջշրջանային 194 արհեստանոցի և վերանորոգման 32 գործարանի կառուցումը, նրանց շահագործման հանձնելու հետևյալ ժամկետներով. 1947 թվին ՄՏ կայանների արհեստանոցներ՝ 150, 1948 թվին՝ 200, հիմնական վերանորոգման միջշրջանային արհեստանոցներ 1947 թվին՝ 50, 1948 թվին՝ 60, վերանորոգման գործարաններ 1947 թվին՝ 5, 1948 թվին՝ 8։

10. Համարել անհանդուրժելի, որ շատ ՄՏ կայաններում տեղի ունեն գյուղատնտեսական մեքենաների անտնտեսվար պահպանման փաստեր, իսկ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մի-

նիստրության օրգանները և տեղական պարտիական ու սովետական օրգան-ները այդ աչքաթող են անում:

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղա-տնտեսության մինիստրությանը և նրա տեղական օրգաններին՝ միջոց-ներ ձեռք առնել և ապահովել մշտա-կան վերահսկողություն ՄՏ կայան-ներում ու տրակտորային բրիգադա-ներում մեքենատրակտորային պար-կի հուսալի պահպանումը կազմակեր-պելու նկատմամբ: ՄՏ կայաններում մեքենաների անտնտեսվար պահպան-ման համար մեղավորներին կանչել քրեական պատասխանատվության:

Տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մեքենաների պահ-պանման համար 1947—1949 թվերի ընթացքում կառուցել անհրաժեշտ քանակությամբ ծածկեր և սարայներ: Պարտավորեցնել տեղական պարտիա-կան և սովետական օրգաններին շի-նարարության ընթացքում կազմակեր-պել կոլխոզների կողմից օգնություն մեքենատրակտորային կայաններին՝ խստիվ պայմանագրային հիմունքնե-



րով, առանց դաշտային աշխատանք-ներին վնասելու, բանվորական ուժ և

[illegible]

տրանսպորտ տրամադրելով:

11. Արդյունաբերության գործա-րաններում կազմակերպել շարժական և ստացիոնար նավթի տարա, պոմ-պեր, շլանգներ, խողովակներ, կշեռք-ներ և նավթի պահեստի այլ ինվեն-տար ու սարքավորում արտադրելը:

12. Գտնել ոչ ճիշտ, որ մեքենա-տրակտորային կայանների դիրեկ-տորների պաշտոնի համար հաճախ առաջադրվում են փորձ և գիտելիքներ չունեցող մարդիկ, որոնք ձեռնհաս չեն կատարելու հանձնարարված գործը:

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մի-նիստրության, տեղական պարտիա-կան, սովետական և գյուղատնտեսա-կան օրգանների անհետաձգելի խըն-դիրը համարել մեքենատրակտորա-յին կայանների ամրապնդումը պատ-րաստված, իրենց գործը իմացող աշ-խատողներով, աշխատանքի առաջ քաշելով որպես ՄՏ կայանի դիրեկ-տորներ, այնպիսի անձանց, որոնք ու-

նեն անհրաժեշտ գիտելիքներ և կազմակերպչական ընդունակություններ։

Դադարեցնել ՄՏ կայանների դիրեկտորներին հաճախակի փոփոխելը, որ վնաս է հասցնում գործին, և խստիվ պահպանել այն կարգը, երբ ՄՏ կայանի դիրեկտորի նշանակում ու հանում է միայն ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրը։

13. Պարտավորեցնել ՍՍՌՄ Բարձրագույն կրթության մինիստրությանը՝ ապահովել ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1945 թվի հոկտեմբերի 6-ի որոշմամբ Գյուղատնտեսական ինստիտուտներին կից կազմակերպված ՄՏ կայանների դիրեկտորների և մեխանիկների որակավորման բարձրացման մշտապես գործող տարեկան դասընթացների աշխատանքի հետագա բարելավումը։ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության կողմից այդ դասընթացներն ուղարկվող ունկնդիրների թիվը 1947 թվին հասցնել 2.500 մարդու, որից 1.200 ՄՏ կայանի դիրեկտորներ և 1.300 ՄՏ կայանի մեխանիկներ։



14. Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը 1947—1948 թվերին կազմակերպել գոյություն ունեցող ցանցը լրացնելու համար գյուղատնտեսության մեքենայացման 25 տեխնիկում և գոյություն ունեցող գյուղատնտեսական տեխնիկումներին կից մեքենայացման 13 բաժանմունք։

15. Պարտավորեցնել ՍՍՌՄ Բարձրագույն կրթության մինիստրությանը 1947 թվին բանալ ՄՏ կայանների ագրոնոմների կատարելագործման դասընթացներ, տարեկան 1.500 մարդու ընդհանուր կոնտինգենտով Մոսկվայի Կ. Ա. Տիմիրյազևի անվան Գյուղատնտեսական Ակադեմիային, Օմսկի, Վորոնեժի, Սարատովի, Լենինգրադի, Խարկովի, Կիևի, Նովոսիբիրսկի, Իրկուտսկի, Տաշկենտի և Թբիլիսիի գյուղատնտեսական ինստիտուտներին կից։

16. 1947 թվից վերականգնել գյուղատնտեսության մեքենայացման դպրոցներում ուսուցման նախապատերազմյան ժամկետները մեխանիկների համար՝ 18 ամիս, տրակտորա-

յին բրիգադիրների համար՝ 10 ամիս, կոմբայնավարների համար՝ 6 ամիս և տրակտորիստների համար՝ 5 ամիս։

17. ՄՏ կայանների աշխատողների կուլտ-կենցաղային պայմանները բարելավելու և բնավարձը հանձնելու ու տրակտորային աշխատանքների ինքնարժեքը իջեցնելու պլանների կատարման գործում նրանց խրախուսելու նպատակով 1947 թվին կազմակերպել մեքենատրակտորային կայաններում ՄՏ կայանների դիրեկտորի ֆոնդ «Մեքենատրակտորային կայանների աշխատանքի մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1939 թվի հունվարի 13-ի որոշմամբ նախատեսված հատկացումների հաշվին։

18. Մեքենատրակտորային կայանների տնտեսության բոլոր հարցերի ղեկավարումը միավորելու նպատակով հավանություն տալ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության կազմում Մեքենատրակտորային կայանների գլխավոր վարչության կազմակերպմանը։



VI

## ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

1. Սովխոզների աշխատանքում խոշոր թերություն համարել նրանց չափազանց մասնագիտացման առկայությունը և տնտեսության միակողմանի ուղղությունը, անասնաբուծության թույլ զարգացումը հացահատիկային սովխոզներում և տեխնիկական կուլտուրաների սովխոզներում, իսկ անասնաբուծական սովխոզներում՝ դաշտավարության ճյուղերի անբավարար զարգացումը։

Սովխոզների աշխատանքի փորձը ցույց է տվել, որ տնտեսության միակողմանի զարգացումը տնտեսապես ձեռնտու չէ, հանգում է աշխատանքային ռեսուրսների և քաշող ուժերի սեզոնային չափազանց մեծ լարման՝ դաշտային աշխատանքների շրջանում և դրանց զգալի թերօգտագործման՝ տարվա մնացած ժամանակներում։ Սովխոզների տնտեսության միակող-

մանի զարգացումը նվազեցնում է նրանց եկամտաբերությունը և թուլացնում սովխոզների ֆինանսական վիճակը։ Հացահատիկային սովխոզներում և տեխնիկական կուլտուրաների սովխոզներում անասնաբուծության թույլ զարգացման պայմաններում չի օգտագործվում հսկայական քանակությամբ դարման, ծղոտ և դաշտավարության այլ կողմնակի արտադրանք, չեն օգտագործվում նաև արոտավայրերի զգալի տարածություններ, որը դանդաղեցնում է սովխոզների տնտեսության զարգացումը և սահմանափակում լրացուցիչ արտադրանք ստանալու հնարավորությունները։ Անասնաբուծական սովխոզներում դաշտավարության անբավարար զարգացման դեպքում չի օգտագործվում զգալի քանակությամբ գոմաղբային պարարտանյութ։

Հաշվի առնելով, որ սովխոզների հաջող զարգացումը, նրանց տնտեսական և ֆինանսական ամրապնդումը կարող են իրականացվել ճիշտ զուգակցված ճյուղեր ունեցող բազ-



մակողմանի անտեսություն ստեղծելու բազայի վրա, պարտավորեցնել ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը, պարտիական և սովետական կազմակերպություններին՝ առաջատար ճյուղի հետ միասին, սովխոզներում զարգացնել նաև տնտեսության այլ ճյուղեր, որոնք հնարավորություն են տալիս առավել լրիվ օգտագործել առանձին սովխոզների բնական և տնտեսական պայմանները, վերացնել գյուղատնտեսական արտադրության խիստ սեզոնայնությունը և զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Այդ նպատակով հացահատիկային սովխոզներում զարգացնել անասնաբուծությունը, առավելապես մսատու անասնաբուծությունը, ոչխարաբուծությունը, թռչնաբուծությունը, իսկ քաղաքների, արդյունաբերական կենտրոնների և կաթնագործարանների մոտ գտնվող հացահատիկային սովխոզներում՝ կաթնային անասնաբուծությունը։ Տեխնիկական կուլտուրաների սովխոզներում ըստ հնարավորության

զարգացնել կաթնային անասնաբուծությունը և թռչնաբուծությունը։ Անասնաբուծական սովխոզներում, բացի անասունների հիմնական տեսակից, զարգացնել նաև անասունների այլ տեսակներ, ինչպես նաև զարգացնել հացահատիկային կուլտուրաները, այդ թվում ֆուրաժային և այլ կուլտուրաների ցանքերը։

2. Սովխոզների աշխատանքում լուրջ թերություն է նաև բանվորական կադրերի ու մասնագետների մեծ հոսունությունը։ Սովխոզների աշխատանքը բարելավելու գործում կարևորագույն խնդիր համարել բանվորների, մասնագետների ու ծառայողների մշտական կադրերի ստեղծումը։ Այդ նպատակով անհրաժեշտ համարել հացահատիկային և անասնաբուծական շրջաններում մինչև 0,5 հեկտար հողամասերի հատկացումը սովխոզների մշտական աշխատողներին՝ այդ հողամասերում սեփական տներ և այլ շենքեր կառուցելու, պտղատու ծառեր տնկելու և բանջարեղեն ու այլ գյուղատնտեսական կուլտուրաներ



ցանելու համար։ Պետական օգնություն ցույց տալ երկտոկոսային երկարատև վարկով սովխոզների այն բանվորներին, մասնագետներին և ծառայողներին, որոնք կառուցում են սեփական տներ, մեկ ընտանիքին 5-ից մինչև 15 հազար ռուբլի, վարկը 10 տարվա ընթացքում հավասար չափերով մարելու պայմանով։ Կառուցողներին օգնություն ցույց տալ, հատկացնելով տեղական շինանյութ, փոխադրական միջոցներ՝ անհատական տներ կառուցելու համար։ Սահմանել, որ սովխոզների տերիտորիայում բանվորների, մասնագետների և ծառայողների կառուցած տները նրանց սեփականությունն են դառնում պետական վարկը լրիվ մարելուց հետո։

3. 1947 թվի պետական պլանին և հնգամյա պլանի առաջադրանքներին համապատասխան՝

ա) ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության սովխոզներում 1947 թվին ցանքատարածությունն ավելացնել 600 հազար հեկտարով և այն հասցնել 6

միլիոն հեկտարի, այդ թվում հացահատիկային կուլտուրաների տարածությունն ավելացնել 400 հազար հեկտարով և այն հասցնել 4,1 միլիոն հեկտարի։ 1948 թվին ցանքատարածությունն ավելացնել մեկ միլիոն հեկտարով և այն հասցնել 7 միլիոն հեկտարի, այդ թվում հացահատիկային կուլտուրաների տարածությունն ավելացնել 600 հազար հեկտարով և այն հասցնել 4,7 միլիոն հեկտարի։

ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության սովխոզներում ավելացնել ցորենի, որպես հիմնական պարենային կուլտուրայի, արտադրությունը։

**Աշնանացան ցորենինը՝** Ուկրաինական ՍՍՌ-ում, Կրասնոդարի, Ստավրոպոլի երկրամասերում, Ռոստովի, Ղրիմի, Վորոնեժի, Կուրսկի մարզերում և Մոլդավական ՍՍՌ-ում 1949 թվին վերականգնել աշնանացան ցորենի արտադրության նախապատերազմյան մակարդակը, զգալիորեն բարձրացնել նրա բերքատվությունը, ավելացնելով աշնանացան ցորենի ցանքը այդ շրջանների սովխոզնե-



րում 1947 թվի աշնանը 321 հազար հեկտարով՝ համեմատած 1946 թվի բերքահավաքի տարածության հետ, և հասցնել 857 հազար հեկտարի, այդ թվում Ուկրաինական ՍՍՌ-ում 400 հազար հեկտարի, և 1948 թվին 930 հազար հեկտարի, այդ թվում Ուկրաինական ՍՍՌ-ում՝ 445 հազար հեկտարի.

**Գարնանացան ցորենինը՝** Արևելյան շրջանների սովխոզներում (Սիբիր, Ուրալ և Ղազախական ՍՍՌ և հյուսիս-արևելյան մարզերը), ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմանը համապատասխան, ցանքատարածությունն ավելացնել 68 հազար հեկտարով և այն հասցնել 1947 թվին 534 հազար հեկտարի, 1948 թվին՝ 805 հազար հեկտարի և 1949 թվին՝ 1.290 հազար հեկտարի, ապահովելով բերքատվության բարձրացումը։

Պովոլժյեում (Կույբիշևի, Սարատովի, Ստալինգրադի և Ուլյանովսկի մարզերում) միջոցներ ձեռք առնել զգալիորեն ընդարձակելու գարնանացան ցորենի, մանավանդ ցորենի

կարծր ցորենի ցանքատարածությու-
նը, ավելացնել գարնանացան ցորենի
ցանքը այդ մարզերի սովխոզներում և
հասցնել 1947 թվին 195 հազար հեկ-
տարի և 1948 թվին 230 հազար հեկ-
տարի։

Ավելացնել գարնանացան ցորենի
ցանքը Ուկրաինական ՍՍՌ սովխոզ-
ներում.

բ) 1947 թվին ՍՍՌՄ Սովխոզների
մինիստրության սովխոզներում խո-
շոր եղջերավոր անասունների գլ-
խաքանակն ավելացնել 121 հա-
զար գլխով և մինչև 1948 թվի
հունվարի 1-ը հասցնել մեկ մի-
լիոն 458 հազար գլխի, խոզերի
գլխաքանակը՝ 122 հազար գլխով և
հասցնել 550 հազար գլխի, ոչխարնե-
րի և այծերի գլխաքանակը՝ 441 հա-
զար գլխով և այն հասցնել 3 միլիոն
167 հազար գլխի, ձիերի գլխաքանա-
կըն ավելացնել 23 հազար գլխով և
հասցնել 339 հազար գլխի։ 1948
թվին խոշոր եղջերավոր անասունների
գլխաքանակն ավելացնել 141 հազար
գլխով և մինչև 1949 թվի հունվարի



մեկը այն հասցնել մեկ միլիոն 599
հազար գլխի, խոզերի գլխաքանակն
ավելացնել 151 հազար գլխով և հաս-
ցընել 701 հազար գլխի, ոչխարների
և այծերի գլխաքանակը՝ 427 հազար
գլխով և հասցնել 3 միլիոն 594 հա-
զար գլխի, ձիերի գլխաքանակը՝ 31
հազար գլխով և հասցնել 370 հազար
գլխի, այն հաշվով, որ 1949 թվին
խոշոր եղջերավոր անասունների, խո-
զերի, ոչխարների և այծերի գլխաքա-
նակը վերականգնվի և հասցվի նա-
խապատերազմյան չափին։

4. 1947—1949 թվերին սովխոզ-
ներում լրիվին ավարտել հողաշինա-
րարությունը, ճիշտ ցանքաշրջանա-
ռությունների արմատավորումը՝ կի-
րառելով խոտացանություն և մաքուր
ցել։ 1949 թվին ապահովել հացահա-
տիկային կուլտուրաների ամբողջ
տարածության վրա առավել բերքա-
տու տեսակավոր սերմերով ցանքը։
Կազմակերպել երեքնուկի և տիմո-
ֆեևկայի, առվույտի ու ժիտնյակի և
այլ բազմամյա ու միամյա խոտա-
սերմերի արտադրությունը յուրա-

քանչյուր սովխոզի սերմացուի լրիվ պահանջը ծածկելու և խոտասերմերի ապրանքային պաշարներ ստեղծելու համար։

5. Սովխոզներում կաթնատնտեսությունը ամեն կերպ զարգացնելու նպատակով անհրաժեշտ համարել գոյություն ունեցող յուղի գործարանների հագեցումը սարքավորմամբ, կազմակերպել խոշոր կաթնատնտեսական սովխոզներում նոր գործարանների կառուցումը և 1947 թվից սկսած լայն չափով կազմակերպել բարձրորակ յուղի և պանրի արտադրությունը։ Անհրաժեշտ գտնել, որպեսզի կաթնագործական ուղղություն ունեցող սովխոզները ունենան իրենց յուղագործարանները։

6. Անհրաժեշտ համարել սովխոզների համար որակյալ բանվորական կադրերի պատրաստումը արհեստագործական ուսումնարանների և ֆաբգործուսի դպրոցների հետ նույնատիպ դպրոցներում։

7. Սովխոզներում տնտեսական հաշվարկը ամրապնդելու նպատակով



անհրաժեշտ համարել պլանից դուրս հանձնվող արտադրանքի խրախուսիչ վարձատրության սահմանումը, արտադրանքի պլանային ինքնարժեքի մեջ մտցնել անհրաժեշտ կուտակումներ, ինչպես նաև սովխոզներում վերականգնել դիրեկտորի ֆոնդը։

8. Կարևորագույն խնդիր համարել մոտակա տարիներում վճռաբար բարձրացնել սովխոզներում արտադրության մեքենայացման մակարդակը, բարելավել մեքենաների օգտագործումը և բարեկարգման անցկացումը։ Խոշոր սովխոզներում ունենալ տեղական շինանյութերի սեփական արտադրություն և մթերում, ինչպես նաև կազմակերպել սովխոզների կարիքները բավարարելու համար անհրաժեշտ քանակությամբ տրանսպորտային միջոցների, ձիասարքի, տարայի և մանր ինվենտարի արտադրությունը։

9. Վերանայել սովխոզների ու տրեստների ղեկավար աշխատողների և մասնագետների պարգևատրման գոյություն ունեցող սիստե-

մը. այդ սիստեմը կախման մեջ դնելով արտադրության ծավալից և պետությանը արտադրանք հանձնելու չափերից, սահմանելով սովխոզների ու տրեստների աշխատողների ուղղակի շահագրգռվածություն արտապլանային արտադրանք ստանալու գործում։ Սահմանել, որ հացահատիկի, կաթի, մսի և բրդի գծով խնքնարժեքի պլանները լրիվին չկատարելու դեպքում պարգևատրումը նվազեցվում է 25 տոկոսով։

10. Պարտավորեցնել տեղական պարտիական և սովետական կազմակերպություններին սովխոզներին ցույց տալ անհրաժեշտ օգնություն, դրանք ամենաարագ կերպով օրինակելի և բարձր արտադրողականություն ունեցող տնտեսություններ դարձնելու համար։

VII

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՏԵԽՆԻԿԱՊԵՍ ՀԱԳԵՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

1. Պարտավորեցնել Գյուղատնտեսական մեքենաշինության մինիստ-



րությանը՝ արտադրության ընդհանուր պլանից 1947 թվին ապահովել հետևյալ մատակարարումը գյուղատնտեսությանը՝ 30,3 հազար տրակտոր, դրանցից 23,5 հազար ՍՏԶ-ՆԱՏԻ-ի, 2 հազար «Կիրովեց Դ-35», 4,8 հազար «Ունիվերսալ —1 և 2» և 510 միլիոն ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, այդ թվում՝ 32 հազար տրակտորային գութան, 80 հազար ձիաքարշ գութան, 37 հազար տրակտորային կուլտիվատոր, 78 հազար ձիաքարշ կուլտիվատոր, 30 հազար տրակտորային շարքացան, 38,8 հազար ձիաքարշ շարքացան, 10 հազար տրակտորային երեսվար գութան, 7 հազար կոմբայն, այդ թվում 700 ինքնագնաց կոմբայն, 50 հազար հնձիչ մեքենա, 55 հազար ձիաքարշ հնձիչ, 45 հազար ձիաքարշ փոցխ, 9 հազար բարդ կալսիչ, 22,4 հազար ձիաքարշ կալսիչ, 2 հազար վուշաքաղ մեքենա, 4 հազար ճակնդեղահան մեքենա, 6 հազար սերմնազտիչ, 1060 հատիկաչորացուցիչ և 11 հա-

զար ձիաքարշ կարտոֆիլահան մե-
քենա։
2. Պարտավորեցնել Տրանսպորտա-
յին մեքենաշինության մինիստրու-
թյանը՝ արտադրության ընդհանուր
պլանից 1947 թվին ապահովել 3,8 հա-
զար Տ—80 մարկայի թրթուրավոր
տրակտորների մատակարարումը գյու-
ղատնտեսությանը։
3. Պարտավորեցնել Ավիացիոն ար-
դյունաբերության, Շինարարական և
ճանապարհային մեքենաշինության,
մեքենաշինության և գործիքաշինու-
թյան, միութենական ռեսպուբլիկա-
ների տեղական արդյունաբերության
մինիստրություններին և ՌՍՖՍՌ Մի-
նիստրների Սովետին կից Արհեստա-
գործական կոոպերացիայի վարչու-
թյանը՝ 1947 թվին ապահովել 36,75
միլիոն ռուբլու գյուղատնտեսական
մեքենաների թողարկումը գյուղատըն-
տեսության համար. դրանցից Ավիա-
ցիոն արդյունաբերության մինիստ-
րության գործարաններում 600 ինք-
նագնաց կոմբայնների թողարկումը,
Շինարարական և ճանապարհային



մեքենաշինության մինիստրության
գործարաններում 8 հազար տրակտո-
րային գութանների թողարկումը։
4. 1946 թվին 75,5 հազար տրակ-
տոր արտադրելու ընդհանուր պետա-
կան պլանից (Գյուղատնտեսական
մեքենաշինության մինիստրության
գծով 57,5 հազար հատ և Տրանսպոր-
տային մեքենաշինության մինիստ-
րության գծով 18 հազար հատ) գյու-
ղատնտեսության համար առանձնաց-
նել 67 հազար տրակտոր, 80 հազար
տրակտորային գութան, 140,2 հազար
ձիաքարշ գութան, 55 հազար տրակ-
տորային կուլտիվատոր, 85 հազար
ձիաքարշ կուլտիվատոր, 67 հազար
տրակտորային շարքացան, 49,55 հա-
զար ձիաքարշ շարքացան, երկու հա-
զար խոփավոր կարտոֆիլատնկիչ մե-
քենա, 32 հազար տրակտորային ե-
րեսվար գութան, 25 հազար կոմբայն,
62 հազար ձիաքարշ հնձիչ մեքենա,
114 հազար ձիաքարշ հնձիչ, 99 հա-
զար ձիաքարշ փոցխ, 16,5 հազար
բարդ կալսիչ, 34,95 հազար ձիա-
քարշ կալսիչ, 2 հազար տրակտորա-

յին, խոտհար մեքենա, 2 հազար տրակտորային փոցխ, 2 հազար կարտոֆիլահան մեքենա, 4 հազար տրակտորային ճակնդեղահան մեքենա, 21 հազար սերմնացրիչ, 22 հազար սիլոսա- ծղոտահատ մեքենա, 20 հազար մրճային հատիկահար մեքենա, 25 հազար քուսպ փշրող մեքենա, 35 հազար արմատահատ մեքենա։

5. Պարտավորեցնել Տրանսպորտային մեքենաշինության մինիստրությանը տրակտորների արտադրության ընդհանուր պետական պլանից գյուղատնտեսության համար ապահովել 10,4 հազար Ս—80 թրթուրավոր տրակտորների մատակարարումը 1948 թվին։

6. Ապահովել տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների պահեստի մասերի արտադրության զգալի ավելացումը, մանավանդ սուր դեֆիցիտային դետալների գծով. այդ նպատակով ավելացնել թե պահեստի մասեր պատրաստող գործարանների թիվը և թե պահեստի մասերի արտադրության կարողությունը Գյուղատըն-



տեսական մեքենաշինության մինիստրության և այլ արդյունաբերական մինիստրությունների՝ Ավտոմոբիլային, Ավիացիոն արդյունաբերության, Տրանսպորտային մեքենաշինության, Սպառազինության և այլ մինիստրությունների գործող գործարաններում. այն հաշվով, որ լիովին ապահովվի ոչ միայն տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների նորոգման կատարումը, այլև ՄՏԿ-ներում լինի դրանց պահեստի մասերի որոշ պաշար։

7. Սահմանել նոր արտադրվող տրակտորները և կոմբայնները պահեստի մասերով ապահովելու հետևյալ կարգը.

ա) յուրաքանչյուր թողարկվող տրակտորի և կոմբայնի համար համապատասխան մատակարարող գործարանը պետք է հանձնի պահեստի մասերի, գործիքների և հարմարանքների անհատական կոմպլեկտ՝ տեխնիկական խնամքն ապահովելու համար.

բ) յուրաքանչյուր տաս տրակտորի և կոմբայնի համար մատակարարող

գործարանը պետք է հանձնի պահեստի մասերի կոմպլեկտ՝ ընթացիկ նորոգումը կատարելու համար.

գ) յուրաքանչյուր հիսուն տրակտորի և կոմբայնի համար մատակարարող գործարանը պետք է հանձնի պահեստի մասերի կոմպլեկտ՝ հիմնական նորոգումը կատարելու համար։

Պարտավորեցնել ՍՍՌՄ Գյուղատընտեսական մեքենաշինության և Գյուղատնտեսության մինիստրություններին՝ սահմանել պահեստի մասերի անվանացուցակ ընթացիկ և հիմնական նորոգման կոմպլեկտների մեջ։

8. Պարտավորեցնել Գյուղատնտեսական մեքենաշինության, Տրանսպորտային մեքենաշինության մինիստրություններին և մյուս արդյունաբերական մինիստրություններին՝ բարելավել թողարկվող տրակտորների, գյուղատնտեսական մեքենաների և նրանց պահեստի մասերի որակը, գործադրելով արտադրության տեխնոլոգիայի մեջ տեխնիկայի նորագույն նվաճումները։ Անհրաժեշտ համարել, որ ՍՍՌՄ



Գյուղատնտեսության մինիստրությունը ընդունող ներկայացուցիչներ ունենա տրակտորների և գյուղատնտեսական մեքենաներ արտադրող հիմնական գործարաններում։

9. Գյուղատնտեսության համար տրակտորների արագացված թողարկումն ապահովելու նպատակով՝

ա) Ալթայի, Ստալինգրադի, Խարկովի, Վլադիմիրի և Լիպեցկի տրակտորային գործարաններում և Գյուղատընտեսական մեքենաշինության մինիստրության հող մշակող ու բերքահավաք կատարող գյուղատնտեսական մեքենաների գործարաններում շինարարական բոլոր աշխատանքներն ավարտել 1948 թվի առաջին կեսում.

բ) Մինսկի տրակտորային գործարանի շինարարությունն ավարտել 1948 թվի առաջին կեսում և 1948 թ. երկրորդ կիսամյակում այն ապահովել «Կիրովեց Դ—35» տրակտորներ արտադրելու սարքավորումով ու պիտույքներով։

10. Տրակտորային և գյուղատնտեսական մեքենաների գործարանների

շինարարությունը համարել առաջնահերթ և հարվածային շինարարություններ։

Պարտավորեցնել միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմներին, ՀամԿ(բ)Պ երկրամասային կոմիտեներին և մարզկոմներին, ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետներին, երկրամասային գործկոմներին և մարզգործկոմներին՝ սիստեմատիկ օգնություն ցույց տալ տրակտորային ու գյուղատնտեսական մեքենաշինության գործարաններին, ինչպես նաև այդ գործարանները կառուցող շինարարական կազմակերպություններին արտադրական կարողությունները ամենաարագ կերպով վերականգնելու և գործարկելու, դրանք կադրերով համալրելու, բնակարանային-կենցաղային պայմանները բարելավելու գործում՝ նրանց համար սահմանված պետական պլանի կատարումն ապահովելու նպատակով։

Գյուղատնտեսությունը տրակտորներով և գյուղատնտեսական մեքենա-



ներով ապահովելը համարել առաջնահերթ և կարևորագույն պետական խնդիր։

11. Հատուկ նշանակություն տալով տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների նոր տիպերի ամենաարագ արմատացմանը գյուղատնտեսության մեջ, պարտավորեցնել Գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությանը՝ ապահովել ավելի կատարելագործված տրակտորների, ինքնագնաց կոմբայնների և հացահատիկ հավաքող այլ մեքենաների, ծածկի տակ աշխատող տրակտորային մեքենաների, տեխնիկական կուլտուրաների՝ մանավանդ բամբակի, ճակնդեղի, թելավուշի, կոկ-սագիզի մեքենաների, կարտոֆիլ և եգիպտացորեն ցանելու և հավաքելու մեքենաների, խոտ հնձելու և մամլելու մեքենաների, անասնաբուծական ֆերմաներում աշխատանքները մեքենայացնելու մեքենաների և ձմեռվա արոտավայրերի հողամասերում սառցաշերտը ջարդելու ու ձյան ծածկը մաքրելու մեքենաների կառուցումն ու արմատացումը։

Վերոհիշյալ մեքենաների ամենաարագ կառուցումը և արտադրության մեջ արմատացնելն ապահովելու հետ միասին, պարտավորեցնել Գյուղատընտեսական մեքենաշինության մինիստրությանը՝ ապահովել բանջարաբուծության, այգեգործության և տեխնիկական կուլտուրաների մշակման ասպարեզում աշխատանքները մեքենայացնելու ձեռքի մոտոռացված ինվենտարի կառուցումն ու արտադրությունը։

Պարտավորեցնել Գյուղատնտեսության մեքենաշինության, Ավիացիոն արդյունաբերության և էլեկտրաարդյունաբերության մինիստրություններին՝ միջոցներ ձեռք առնել զգալիորեն ավելացնելու քամու շարժիչների, էլեկտրասարքերի և դրանց պահեստի մասերի արտադրությունը։

12. ՄՏԿ-ների, սովխոզների ու կոլխոզների և Մթերումների մինիստրության մթերող կազմակերպությունների համար 1947 թվին առանձնացնել 40 հազար և 1948 թվին 60 հազար բեռնատար ավտոմոբիլ, ավելացնել



«Գազ-67» տիպի մարդատար ավտոմեքենաների մատակարարումը ՄՏԿ-ներին և սովխոզներին։

13. Պարտավորեցնել Քիմիական արդյունաբերության մինիստրությանը, Սև մետալուրգիայի մինիստրությանը, Լիտվական և Լատվիական ՍՍՌ-ների Տեղական արդյունաբերության մինիստրություններին՝ անպայման կատարել հանքային պարարտանյութերի և գյուղատնտեսական բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու համար քիմիական միջոցներ արտադրելու 1947 թվի պլանը։ Ապահովել 1948 թվին գյուղատնտեսության համար առնվազն 3.130 հազար տոննա սուպերֆոսֆատի, ազոտային պարարտանյութերի, կալիական պարարտանյութերի, ֆոսֆորիտային ալյուրի արտադրությունը՝ վերահաշված ստանդարտային աղերի և 1947 թվի վերջերին ստեղծել թույնա-քիմիական նյութերի արտադրման կարողություններ՝ պլանով սահմանված չափով։

*Պարտավորեցնել Հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը և երկաթուղիների պետերին՝ պարարտանյութեր մատակարարելու պլանին համապատասխան լրիվ պլանավորել պարարտանյութեր ուղարկելու վագոնները և ապահովել վագոնների առաջնահերթ հատկացումը պարարտանյութերի համար՝ կարևորագույն բեռներին հավասար։*

*Մեծ նշանակություն տալով պարարտանյութեր և քիմիական միջոցներ արտադրող Լիսիչանսկի քիմիական կոմբինատի շինարարությանը և ամենաարագ շահագործմանը, հանձնարարել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին՝ որոշել քիմիական կոմբինատի շինարարության ժամկետներն ու ծավալը, ինչպես նաև միջոցներ ձեռք առնել ապահովելու Լիսիչանսկի քիմիական կոմբինատի արագացված շինարարությունը 1947 թվին։*

*14. Պարտավորեցնել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Նավթի մատակարարման գլխավոր վարչությանը և Հաղորդակցության ճանապարհների*



*մինիստրությանը՝ ապահովել նավթամթերքի ուղարկումը նավթի բազաները, նպատակ դնելով ստեղծել փոխանցիկ պաշարներ այնպիսի քանակությամբ, որն անհրաժեշտ է դաշտային աշխատանքների շրջանում ՄՏԿ-ների և սովխոզների տրակտորների անխափան աշխատանքի համար։*

## VIII

## ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԵՎ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԵԼԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԽԱԽՏՈՒՄՆԵՐԻ ՎԵՐԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*1. Նշելով, որ վերջին տարիներս շատ մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում թույլ են տրվել կոլխոզներում Գյուղատնտեսական արտելի կանոնադրության խեղաթյուրումներ և խախտումներ, որոնք արտահայտվել են կոլխոզների հանրային հողերի հափշտակմամբ, կոլխոզային*

քարիքի՝ ինվենտարի, անասունների,
այլ գույքի ու դրամական միջոցների
վատնումով, աշխօրերի սխալ ծախ-
սումով, գյուղատնտեսական արտելի
գործերի կառավարման դեմոկրատա-
կան հիմունքների խախտումով,
պարտավորեցնել տեղական պար-
տիական և սովետական կազմակեր-
պություններին՝ մինչև վերջը վերաց-
նել այդ խախտումներն ու խեղաթյու-
րումները, միջոցներ ձեռք առնել ա-
մեն կերպ ամրապնդելու կոլխոզների
հանրային տնտեսությունը և լրջորեն
բարելավելու կոլխոզների ղեկավա-
րումը։

2. Սահմանել, որ կոլխոզային շի-
նարարության մեջ պարտիայի գլխա-
վոր խնդիրն է գյուղատնտեսական
արտելի հետագա կազմակերպական-
տնտեսական ամրապնդումը, կոլխոզ-
ների հանրային սեփականության
բազմապատկումը։ Դա պահանջում է
համառ, ամենօրյա աշխատանք կա-
տարել և բարձրացնել պարտիական ու
սովետական օրգանների պատասխա-
նատվությունը արտադրության հան-



րային միջոցները՝ լծկան ու մթերա-
տու անասունները, սերմացուի, ֆու-
րաժային և ապահովագրական ֆոն-
դերը, գյուղատնտեսական ինվենտարը
պահպանելու և ավելացնելու համար,
պահանջում է զարգացնել գյուղա-
տնտեսական արտադրության օժան-
դակ ճյուղերը, կառուցել գյուղատնտե-
սական շենքեր և ավելացնել արտելի
անբաժանելի ֆոնդերը։

3. Լուրջ թերություն համարելով
դիմազրկության առկայությունը կոլ-
խոզների հողի օգտագործման աս-
պարեզում, որն արտահայտվում է
նրանով, որ դաշտավարական բրիգա-
դաներին ոչ միշտ ամրացվում են մըշ-
տական հողամասեր ցանքաշրջանա-
ռության դաշտերում, որը խանգարում
է բերքատվության բարձրացմանը,
անհրաժեշտ համարել, որ կոլխոզները
ամենակարճ ժամանակամիջոցում վե-
րացնեն այդ լուրջ թերությունը և դաշ-
տավարական բրիգադաներին ամ-
րացնեն մշտական հողամասեր ցան-
քաշրջանառության դաշտերում, ին-
վենտարը, անասունները և թույլ չտան

դաշտավարական բրիգադաների կազ-
մի հոսունություն։ Բրիգադաների ներ-
սում ստեղծել օղակներ, նրանց ամ-
րացնելով շարահերկ, տեխնիկական,
բանջարանոցային կուլտուրաները և
սերմնաբուծարանները, իսկ այնտեղ,
որտեղ դա հնարավոր է, նաև հացա-
հատիկային կուլտուրաները։

4. Նշելով, որ աշխատանքի արտա-
դրողականության հետագա բարձ-
րացման գործում բերքատվության
ավելացման և անասնաբուծության
մթերատվության աճման գործում
լուրջ խոչընդոտ է հանդիսանում կոլ-
խոզներում տեղի ունեցող հավասա-
րեցումը աշխատանքի վարձատրու-
թյան ասպարեզում, կոլխոզնիկների
միջև աշխօրերի և կոլխոզային եկա-
մուտների բաշխման ասպարեզում,
անհատական և մանր խմբային գոր-
ծավարձի անբավարար կիրառումը
դաշտային և այլ աշխատանքներում,
արտադրական իջեցրած և հնացած
նորմաների առկայությունը, որոնց
հետևանքն է աշխօրերի վատնումը,
այդ թերությունները վերացնելու նպա-



տակով անհրաժեշտ համարել արտա-
դրական նորմաների և աշխատանքի
գնահատման վերանայումը ամենա-
մոտ ժամանակներս, ապահովելով
աշխատանքի ավելի բարձր վար-
ձատրություն կարևորագույն աշխա-
տանքներում և աշխատանքի վարձա-
տրության նվազեցում երկրորդական
աշխատանքների նկատմամբ։

Աշխօրերն ավելի խնամքով և ճիշտ
բաշխելու համար կոլխոզներին հանձ-
նարարել տարվա սկզբից պլանավո-
րել աշխօրերի ծախսումը աշխա-
տանքների համար ըստ առանձին
ճյուղերի և գյուղատնտեսական կուլ-
տուրաների, խիստ վերահսկողություն
հաստատելով, որ աշխօրերը ճիշտ
տրվեն կատարված աշխատանքին և
բրիգադաների ու օղակների համար
սահմանված աշխօրերի ծախսման
պլաններին համապատասխան։

Կոլխոզներում եկամուտների բաշ-
խումը կատարել հաշվի առնելով բրի-
գադայի հավաքած բերքը, իսկ բրի-
գադաներում՝ օղակների հավաքած
բերքը, այն հաշվով, որ ավելի բարձր

բերք ստացած բրիգադների և օղակների կոլխոզնիկները համապատասխանորեն ստանան նաև ավելի բարձր վարձատրություն, իսկ ավելի ցածր բերք ստացած բրիգադների և օղակների կոլխոզնիկները իրենց աշխատանքի համար ստանան պակաս վարձատրություն։

Այս հիմնական դրույթներին համապատասխան և հաշվի առնելով առանձին ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի կոլխոզների փորձը, առաջարկել Կառավարությանը կից Կոլխոզների գործերի խորհրդին և ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ մշակել և ՍՍՌՄ Մինիստրների Սովետին ու ՀամԿ(բ)Պ Կենտկոմին ներկայացնել առաջարկներ, կոլխոզներում աշխատանքի կազմակերպման ու վարձատրման գործը բարելավելու, արտադրական նորմաները բարձրացնելու և աշխօրեր հաշվելու բնագավառում կարգ ու կանոն մտցնելու ուղղությամբ։

Անհրաժեշտ համարել պահպանել աշխատունակ կոլխոզնիկների կող-



մից աշխօրեր վաստակելու՝ 1942 թվին բարձրացված պարտադիր մինիմումը։

Անթույլատրելի համարելով, որ լրացուցիչ վարձատրության օրենքը դեռ ոչ բոլոր կոլխոզներում է կիրառվում, ինչպես և այն, որ բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանը գերակատարելու համար հասնող լրացուցիչ վարձատրությունը շատ դեպքերում ժամանակին չի տրվում կոլխոզնիկներին, խիստ վերահսկողություն հաստատել կոլխոզնիկներին հասնող լրացուցիչ վարձատրությունը ժամանակին վճարելու նկատմամբ։

5. Հանձնարարել կոլխոզներին՝ այն հողամասերում, որոնք գտնվում են գյուղերից ավելի քան ութ կիլոմետր հեռավորության վրա, կազմակերպել մշտական դաշտակայաններ, նպատակ դնելով ավելի արդյունավետ կերպով օգտագործել աշխատանքային ժամանակը և ապահովել պատշաճ կենցաղային պայմաններ գյուղատնտեսական աշխատանքների շրջանում՝ դաշտավարական, տրակտո-

րային ու անասնաբուժական բրիգադների կոլխոզնիկների համար։ Դաշտակայաններում կառուցել շենքեր, բնակության համար՝ մշտական և ամառային հանրակացարաններ, խոհանոց - ճաշարաններ, անասուն պահելու համար կառուցել անասնապահական անհրաժեշտ շենքեր, գյուղատնտեսական մեքենաներն ու ինվենտարը պահպանելու համար կազմակերպել ծածկերի և սարայների կառուցում։

6. Գտնելով, որ գյուղատնտեսության բարձրացման խնդիրները պահանջում են ուժեղացնել կոլխոզներին ցույց տրվող ագրոնոմիական և զոոանասնաբուժական օգնությունը, անհրաժեշտ համարել ՄՏԿ-ների և գյուղատնտեսության շրջանային բաժինների ագրոնոմիական տեղամասերն ամրապնդելու համար ՄՏԿ-ների և գյուղատնտեսության շրջանային բաժինների ագրոնոմիական տեղամասերը, ինչպես նաև խոշոր կոլխոզները 1947 թվին ուղարկել կոլխոզներին ագրոնոմիական օգնություն ցույց տա-



լու համար զգալի թվով ագրոնոմներ՝ գերատեսչություններից, հիմնարկներից և ուսումնական հաստատություններից։

Ագրոնոմիական սպասարկումը կանոնավորելու նպատակով սահմանել, որ ՄՏԿ-ների ագրոնոմիական տեղամասերը սպասարկում են այն կոլխոզներին, որոնք պայմանագրեր ունեն ՄՏԿ-ների հետ, իսկ ՄՏԿ-ի գործունեության շրջանի մեջ չմտնող կոլխոզները սպասարկվում են գյուղատնտեսության շրջանային բաժինների ագրոնոմիական տեղամասերի կողմից։ Սահմանել, որ ՄՏԿ-ների ագրոնոմների ագրոնոմիական աշխատանքի ղեկավարումն ու վերահսկողությունը իրականացնում է գյուղատնտեսության շրջանային բաժինը։

7. Սահմանել, որ այն անձինք, որոնք ավարտել են ագրոնոմիական, զոոտեխնիկական և անասնաբուժական բուհերը, ուղարկվում են ՄՏԿ-ները, սովխոզները, կոլխոզները, ագրոնոմիական և զոոտեխնիկական ու անասնաբուժական տեղամասերը և

մեկ տարվա ընթացքում, անհրաժեշտ գործնական փորձ ձեռք բերելու համար անցնում են ստաժավորում։ Բարձրագույն ուսումնական հաստատությունները ավարտած անձինք ստաժավորումն անցնում են կրտսեր ագրոնոմների, կրտսեր զոոտեխնիկների և կրտսեր անասնաբույժների պաշտոններում։

8. Սահմանել, որ ագրոնոմները, զոոտեխնիկները, անասնաբույժները, ինժեներները, մեխանիկները և գյուղատնտեսության մյուս մասնագետները, որոնք աշխատում են ոչ կոլխոզներում, սովխոզներում, ՄՏԿ-ներում, ագրոնոմիական տեղամասերում և զոո-անասնաբուժական տեղամասերում, այլ ապարատում, ստանում են 25 տոկոս պակաս աշխատավարձ, քան կոլխոզների, սովխոզների և ՄՏԿ-ների համապատասխան աշխատողները։

9. Կոլխոզային կադրերի՝ կոլխոզների նախագահների, բրիգադիրների, ֆերմաների վարիչների և հաշվետարների պատրաստումն ու վերապատ-



րաստումը բարելավելու նպատակով անհրաժեշտ համարել մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում 1947 թվին կազմակերպել միամյա և երկամյա պետական դպրոցներ, հիմնելով նրանց կից օրինակելի ուսումնա-փորձնական տնտեսություններ, այն հաշվով, որ այդ դպրոցները տան լիովին պատրաստված ղեկավար կոլխոզային աշխատողներ։ Կոլխոզների նախագահների կարճատև վերապատրաստման համար յուրաքանչյուր մարզում, երկրամասում, ռեսպուբլիկայում 1947 թվին կազմակերպել մշտապես գործող 6-ամսյա դասընթացներ։

Կարևոր նշանակություն տալով կոլխոզային արտադրության վարպետների՝ դաշտավարների, անասնաբույծների, այգեգործների, բանջարաբույծների, մեղվաբույծների պատրաստմանը, ընդարձակել պետական տարեկան գյուղատնտեսական դպրոցների ցանցը, այն հաշվով, որ յուրաքանչյուր մարզ, երկրամաս և ռեսպուբլիկա կոլխոզների կարիքների

համար այդ կադրերը պատրաստի
լիակատար պահանջների սահմաննե-
րում։

10. Ելնելով ամենաարագ կերպով
ագրոնոմներ պատրաստելու անհրա-
ժեշտությունից, նպատակահարմար
համարել կազմակերպել մարզային
ագրոնոմիական դպրոցներ, ուսուց-
ման երեք տարվա տևողությամբ։
Մարզային ագրոնոմիական դպրոց-
ներն ավարտած անձանց տալ կրտսեր
ագրոնոմի կոչում։

## IX

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ ՄԹԵՐՆԵԼՈՒ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը
նշում է, որ գյուղատնտեսական
մթերքների մթերման այն քաղաքակա-
նությունը, որը ընդունվել է 1940
թվին և որի համաձայն կոլխոզների
կողմից դաշտավարական և անասնա-
պահական մթերքների պարտադիր
հանձնումները հաշվվում են կոլխոզ-
ների վարելահողի կամ հողային տա-



րածության յուրաքանչյուր հեկտարից,
ամբողջովին և լիովին արդարացրել է
իրեն։

Մինչև 1940 թիվը գոյություն ունե-
ցող այն կարգը, երբ պարտադիր
հանձնումները հաշվվում էին ցանքի
տարածությունից կամ անասունների
գլխաքանակից, ոչնչացնում էր կոլ-
խոզների շահագրգռվածությունը կոլ-
խոզային հանրային տնտեսության
զարգացման նկատմամբ, կոլխոզնե-
րում ձգտում էր առաջ բերում աշխա-
տել նվազեցնելու ցանքի պլանները և
անասնաբուծության զարգացումը,
խրախուսում էր ցանքատարածու-
թյան կրճատումը, չէր խթանում նոր
հողերի յուրացումը։

Պարտադիր հանձնումները հաշվե-
լու նոր սկզբունքը, որը հենվում է
այնպիսի կայուն բազայի վրա, ինչ-
պիսին է առհավետ օգտագործման
ակտերով պետության կողմից կոլ-
խոզներին ամրացված հողը, ըն-
տեղծեց կոլխոզներում շահագրգռ-
վածություն հանրային դաշտավարու-
թյան ու անասնաբուծության զար-

գացման նկատմամբ, վերացրեց մթե-
րումների սիստեմի այն արատը, ո-
րով ցանքերն ընդարձակող և ֆերմա-
ներում անասունների գլխաքանակն
ավելացնող առաջավոր կոլխոզները
աննպաստ դրության մեջ էին դրվում
այն հետամնաց կոլխոզների համե-
մատությամբ, որոնք չեն տալիս
ցանքատարածության աճ, չունեն
ֆերմաներ կամ հանրային անասնա-
բուծություն։

Միայն կոլխոզային կարգերի հա-
կառակորդները, որոնք չեն հասկա-
նում պարտադիր հանձնումները վա-
րելահողի յուրաքանչյուր հեկտարից
հաշվելու օրենքի առաջադիմական
նշանակությունը գյուղատնտեսության
համար և որոնք մոռանում են կոլ-
խոզների հանրային տնտեսությանը
պատերազմի պատճառած վնասի ամ-
բողջ լուրջ բնույթը, կարող են քաշել
պարտիան դեպի ետ, դեպի այն քա-
ղաքականությունը, երբ հանձնումնե-
րը կատարվում էին նայած ցանքատա-
րածությանը և որը վերացվել է որ-
պես գյուղատնտեսության զարգաց-



ման շահերին չհամապատասխանող։

Ելնելով վերոհիշյալից, ՀամԿ(բ)Պ
Կենտկոմի պլենումը գյուղատնտեսա-
կան մթերքների մթերման ասպարե-
զում, պարտադիր է համարում խըս-
տիվ պահպանել պարտադիր հանձ-
նումները կոլխոզներին ամրացված
վարելահողի յուրաքանչյուր հեկտա-
րից հաշվելու քաղաքականությունը՝
դաշտավարության մթերքները հար-
կելիս և կոլխոզներին ամրացված հո-
ղատարածության յուրաքանչյուր
հեկտարից՝ անասնապահության մը-
թերքները հարկելիս։

Դրա հետ միասին, ներկա պայման-
ներում անհրաժեշտություն է առաջ
գալիս վարչական մեկ շրջանի բոլոր
կոլխոզների համար պետությանը
հացահատիկի պարտադիր հանձնում-
ներ կատարելու միասնական նորմա-
յի փոխարեն, գործադրել շրջանում
մի քանի նորմա, ըստ կոլխոզների
խմբերի, որովհետև դա հնարավորու-
թյուն կտա անհրաժեշտ դեպքերում
կարգավորել կոլխոզների պարտա-
դիր հանձնումների չափը, հաշվի առ-

նելով նրանց ամրացված հողի յուրացման աստիճանը։ Այդ կապակցությամբ այնպիսի հողառատ կոլխոզներ ունեցող շրջաններում, որոնք հողը չեն յուրացնում աշխատանքային ձեռքերի պակասի հետևանքով, նրանց կողմից պետությանը հացահատիկ հանձնելու պարտադիր նորմաները պետք է նվազեցնել, իսկ այն շրջաններում, որտեղ կոլխոզները յուրացնում են հողը և ունեն բավարար թըվով բանվորական ձեռքեր, բարձրացնել կոլխոզների կողմից պետությանը հացահատիկ հանձնելու նորմաները։

1. Առաջարկել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին՝ 1947 թ. մայիսի մեկից ոչ ուշ սահմանել պետությանը կոլխոզների կողմից պարտադիր կարգով հացահատիկ հանձնելու շերտավորված նորմաներ, որպես մշտական, թույլ տալով մի քանի նորմաների գործադրումը վարչական մեկ շրջանում։

2. ՄՏԿ-ների սպասարկած կոլխոզների կողմից պետությանը պարտադիր կերպով հացահատիկ և բրինձ հանձնելու նորմաները պետք է 25 տո-



կոսով ավելի բարձր լինեն, քան տըվյալ շրջանի ՄՏԿ-ի կողմից սպասարկվող կոլխոզների համար սահմանված նորմաները։

3. Սխալ և նվազեցված համարել ցորենն ու տարեկանը վարսակով, գարիով ու կորեկով փոխարինելու համար գոյություն ունեցող էկվիվալենտները։

Առավել արժեքավոր պարենային կուլտուրաների՝ ցորենի, տարեկանի արտադրությունը և պետությանը հանձնելը խրախուսելու նպատակով, անհրաժեշտ համարել բարձրացնել ցորենն ու տարեկանը վարսակով, գարիով ու կորեկով փոխարինելու էկվիվալենտներն այն դեպքերում, երբ ՍՍՌՄ Կառավարությունը բացառության կարգով թույլատրում է ընդունել կոլխոզներից և գյուղացիական տնտեսություններից վարսակ, գարի և կորեկ ի հաշիվ պետությանը հացահատիկ ու տարեկան հանձնելու պարտավորությունների կատարման։ Սահմանել, որ սկսած 1947 թվի բերքից, մթերումների և փոխանակման ժամա-

[illegible] ցորենի և տարեկանի փոխարինումը կատարվում է հետևյալ էկվիվալենտով՝ 1 փութ ցորենը հավասար է 2 փութ վարսակի, 1 փութ 30 ֆունտ գարու, 1 փութ 20 ֆունտ կորեկի. 1 փութ տարեկանը հավասար է 1 փութ 30 ֆունտ վարսակի, 1 փութ 20 ֆունտ գարու, 1 փութ 10 ֆունտ կորեկի։

Առաջարկել ՍՍՌՄ Մինիստրների Սովետին՝ կոլխոզների և գյուղացիական տնտեսությունների կողմից 1947 թվի բերքից կատարվելիք ցորենի և տարեկանի հանձնումներն ավելացնել ի հաշիվ ֆուրաժային կուլտուրաների հանձնումների համապատասխան կրճատման։

4. Նկատի առնելով հացահատիկային, ձիթատու և տեխնիկական կուլտուրաների, խոտի սերմնանոցների և կարտոֆիլի բերքատվության ու ցանքատարածության վերաբերյալ տվյալների քաղաքական և ժողովրդատնտեսական նշանակությունը, անհրաժեշտ համարել ՍՍՌՄ Պետպլանին կից կազմակերպել բերքատվությունը որոշող Պետական տեսչություն։



5. Մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը համարել՝ ապահովել, որ յուրաքանչյուր շրջան, յուրաքանչյուր կոլխոզ ու սովխոզ խստիվ պահպանի պարտադիր հանձնումների օրենքը և անպայման կատարի 1947 թվի հացամթերումների պետական պլանը օրենքով սահմանված ժամկետին։

Պարտավորեցնել պարտիական և սովետական կազմակերպություններին՝ հացամթերումները ծավալել բերքահավաքի առաջին օրերից և թույլ չտալ նախորդ տարիների սխալները, երբ հացահատիկի հանձնման տեմպը ետ էր մնում կալսման տեմպից կամ երբ կալսումը ձգձգվում էր, որի պատճառով հացահատիկի մթերումների պլանը մի շարք շրջաններում ու կոլխոզներում վիժում էր։ Կալսման հենց սկզբից հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզ, յուրաքանչյուր սովխոզ ամեն օր մասնակցի պետությանը հացահա-

տիկ հանձնելու գործին և գտնվի պարտիական ու սովետական կազմակերպությունների ղեկավար ներգործման տակ՝ մինչև հացահատիկի հանձնման պլանը լրիվ կատարվելը, հատուկ ուշադրություն նվիրելով ետ մնացող կոլխոզներին, սովխոզներին և շրջաններին։

6. Հաշվի առնելով երկրը անասնապահական մթերքներով ապահովելու առանձնապես կարևոր նշանակությունը և այդ մթերքների պետական ռեզիրվներ ստեղծելու անհրաժեշտությունը, պարտավորեցնել մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական կազմակերպություններին՝ լրջորեն բարելավել անասնապահական մթերքների մթերման ղեկավարությունը և ապահովել անասնապահական մթերքների մթերումների պետական պլանների ժամանակին կատարումը կոլխոզների, սովխոզների ու գյուղացիական տնտեսությունների կողմից։



## X

## ԳՅՈՒՂՈՒՄ ԿԱՏԱՐՎԵԼԻՔ ՊԱՐՏԻԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄ

1. Համ Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը գտնում է, որ հետպատերազմյան շրջանում գյուղատնտեսությունը բարձրացնելու ասպարեզում պարտիայի առաջ դրված խնդիրները պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում են լայնորեն ծավալել քաղաքական աշխատանքը գյուղում, պարզաբանել այդ խնդիրները աշխատավորներին, նրանց կազմակերպել և պայքարի հանել գյուղատնտեսության վերականգնման ու զարգացման համար և հասնել մասսաների հետ կապի հետագա ամրապնդմանը։ Անհրաժեշտ է վերջ տալ գյուղի աշխատանքում գոյություն ունեցող խոշոր թերություններին ու նախ և առաջ այն բանին, որ ղեկավար

...ների որոշ մասը դեռ մինչև այժմ ...ել անհոգ է վերաբերվում կոլտնտեսություններին, թույլ է տալիս պարտիայի գծի խեղաթյուրումներ կոլտնտեսային շինարարության մեջ, անհրաժեշտ կազմակերպական և քաղաքական աշխատանք չի կատարում գյուղում։ Անհրաժեշտ է, որ շրջանների, մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական օրգանների ղեկավար աշխատողները սիստեմատիկաբար լինեն կոլտնտեսություններում և անձամբ քաղաքական ու կազմակերպական պարտիական աշխատանք կատարեն, անցկացնեն զրույցներ և կոլտնտեսականների ժողովներ, զբաղվեն պարտիական և քաղաքական աշխատանքի բարելավմամբ սկզբնական պարտկազմակերպություններում։

2. Պարտավորեցնել մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին՝ բարելավել պարտիայի գյուղական շրջկոմների ղեկավա-



րությունը, հասնել այն բանին, որ պարտիայի շրջկոմները տոգորվեն լիակատար պատասխանատվությամբ՝ կոլտնտեսությունների վիճակի և զարգացման համար, խորապես թափանցեն կոլտնտեսային կյանքի բոլոր մանրամասնությունների մեջ և միջոցներ ձեռք առնեն յուրաքանչյուր առանձին կոլտնտեսություն ամրապնդելու համար։

3. Անհրաժեշտ համարել ՄՏԿ-ներում մտցնել դիրեկտորի քաղաքական գծով տեղակալի պաշտոն։

ՄՏԿ-ների դիրեկտորների քաղաքական գծով տեղակալները պետք է ձգտեն բարելավել ՄՏԿ-ների աշխատանքը, ապահովեն ՄՏԿ-ների և կոլտնտեսությունների ճիշտ փոխհարաբերությունները, հսկեն, որ կոլտնտեսությունները և ՄՏԿ-ները խստիվ կատարեն պայմանագրային հարաբերությունները, որ այդ հարաբերությունների մեջ թե ՄՏԿ-ները, և թե կոլտնտեսությունները փոխադարձաբար չթաքցնեն իրենց աշխատանքի թերությունները։ ՄՏԿ-ների դիրեկ-

տորների քաղաքական գծով տեղա-
կալները պետք է ապահովեն ՄՏԿ-
ների պարտիական կազմակերպու-
թյունների աշխատանքի բարելավու-
մը, ծավալեն քաղաքական, դաստիա-
րակչական աշխատանք տրակտո-
րիստների, կոմբայնավարների և
ՄՏԿ-ների այլ աշխատողների մեջ։

***

Համկ(բ)Պ Կենտկոմի պլենումը ա-
ռաջնակարգ նշանակություն է տալիս
գյուղատնտեսության ամենաարագ
վերականգնման և վերելքի գործին,
որպես ՍՍՌՄ ժողովրդական ամբողջ
տնտեսության հաջող զարգացումը
և ժողովրդի նյութական բարեկեցու-
թյան հետագա բարելավումն ապահո-
վելու անհրաժեշտ պայման։ Մեր ամ-
բողջ պետության համար կարևորա-
գույն այդ խնդրի լուծումը պետք է
գտնվի պարտիական և սովետական
օրգանների, կոլխոզնիկների, սովխոզ-
ների և ՄՏԿ-ների բանվորների, գյու-



ղատնտեսության մասնագետների և
գյուղատնտեսության համար պատ-
վերներ կատարող արդյունաբերու-
թյան բանվորների ու ինժեներա-տեխ-
նիկական աշխատողների ուշադրու-
թյան կենտրոնում։

Համկ(բ)Պ Կենտկոմի պլենումը
պարտավորեցնում է պարտիական և
սովետական օրգաններին՝ ուժեղաց-
նել իրենց օգնությունը ՄՏԿ-ներին,
կոլխոզներին և սովխոզներին նը-
րանց արտադրությունը կազմակեր-
պելու գործում, կազմակերպել և ըղ-
խավորել կոլխոզնիկների, սովխոզնե-
րի, ՄՏԿ-ների բանվորների և գյուղա-
տնտեսական արտադրության մասնա-
գետների ամենօրյա պայքարը գյու-
ղատնտեսական կուլտուրաների բեր-
քատվությունը ամեն կերպ բարձրաց-
նելու համար՝ դաշտային աշխա-
տանքների որակը վճռաբար բարելա-
վելու, կոլխոզների և սովխոզների
դաշտերում առաջավոր ագրոտեխնի-
կա գործադրելու և կոլխոզային գյու-

ղի աշխատանքային ու նյութական-տեխնիկական ռեսուրսները լրիվ օգտագործելու հիման վրա։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը գտնում է, որ 1947 թվի գարնանացանի նախապատրաստումը բոլոր կոլխոզների, ՄՏԿ-ների, սովխոզների և բոլոր գյուղացիական տնտեսությունների կողմից ժամանակին ավարտելը, գարնան դաշտային աշխատանքների հաջող անցկացումը կարևորագույն տնտեսական - քաղաքական խնդիր է։

—*—